# ՈՂՋՈՒՅՆ, ԴՊՐՈՑ

ԼՅՈՒԴՎԻԳ ԴՈՒՐՅԱՆ

Ողջո՜ւյն, դպրոց մեր սիրելի,
Ողջո՜ւյն, քեզ զա՜նգ առաջի՜ն,
Ուրախ սրտի կարոտով լի
Սպասել ենք քո կանչին:

Թողած կանաչ դաշտ ու անտառ,
Թողած ճամբար ու խարույկ,
Մենք քո գիրկն ենք եկել կայտառ,
Եկել պայծառ ու առույգ:

Ամեն ծաղիկ, առվակ ու գետ,
Խնդություն է մեզ տվել,
Մենք բերել ենք, բերել մեզ հետ
Խնդությունն այդ քեզ նվեր:

Այս լուսաշող արևի տակ,
Երկրում այս մեծ ու ազատ,
Դու մոր նման լավն ես ու թանկ,
Դու մոր նման հարազատ:

Ողջո՜ւյն, դպրոց մեր սիրելի,
Ողջո՜ւյն, քեզ զա՜նգ առաջին,
Ուրախ սրտի կարոտով լի
Սպասել ենք քո կանչին:

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ՀԱՅԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Գիտե՞ս, ինչ որ Սամվելենց տանը ոչ ոք չկա,—ասաց Աշոտը:

—Ի՞նչ անենք որ,—անտարբեր պատասխանեց Ստեփանը:

Նրանք նստած էին երրորդ հարկի պատշգամբում և նայում էին դեպի Սամվելենց բակը: Քիչ առաջ Աշոտի մայրիկը նրանց ծիրան էր տվել: Տղաները մրգերն արդեն կերել էին, հիմա էլ կորիզներն էին ջարդում:

— Որտեղի՞ց իմացար, որ Սամվելենք տանը չեն. գուցե նե՞րսն են,—քիչ անց հարցրեց Ստեփանը:

— Դե, ինչպես ասեմ...—կմկմաց Աշոտը:—Երևում է... Բակում մի տեսակ, ուրիշ տեսակ է... տխուր է:

— Շոգ է,—ասաց Ստեփանը:— Երբ շոգ է լինում, թվում է, որ աշխարհում ոչ ոք չկա:— Հետո անսպասելի աշխուժանալով՝ շարունակեց.— Լսիր, գնա Սամվելից հեծանիվն ուզիր, մի քիչ քշենք:

— Սամվելենք տանը չեն:

— Է՜...

— Ազնիվ խոսք,—չգիտես ինչու, ձայնը ցածրացնելով ասաց Աշոտը:

— Գնանք տեսնենք: Հիմա իսկական հեծանիվ քշելու ժամանակ է: Փողոցներում ոչ ոք չկա: Գնանք:

— Լավ,—ճարահատյալ ասաց Աշոտը:

Նրանք իջան իրենց շենքի բակը: Քիչ այն կողմ, ընդհանուր բակի մեջ, Սամվելենց տունն էր: Բակի դուռը փակ էր: Բախեցին: Բայց բաց անող չեղավ:

— Տանը չեն,—ասաց Աշոտը:

— Է՜... ներսն են՝ չեն լսում,— սրտնեղեց Ստեփա-



ՍԵՊՏԵՄԲԵՐ
№ 9 1965 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
43-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

*նը։— Եկ ինքներս բաց անենք... Մի փայտի կտոր տուր, տես ինչ եմ բաց անում։*

*Հետո Ստեփանը հենց ինքն էլ անմիջապես մի չոր ճյուղի կտոր գտավ և գործի անցավ։*

*— Տանը չեն, գնանք, հարկավոր չէ,— խնդրեց Աշոտը։*

*— Որ տանը չեն, ինչպե՞ս են դուռը հետևից փակել։*

*— Նրանք բակի հետևի դուռն են փակում։*

*Բայց Ստեփանն արդեն բաց էր արել դուռը։*

*— Սամվե՜լ, Սամվե՜լ...—կանչեց Ստեփանը, երբ նրանք բակ մտան։— Դե, դու էլ կանչիր... քո ընկերն է, չէ՞...*

*— Սամվե՜լ...—ճարահատյալ կանչեց Աշոտը։*

*Մի քիչ սպասեցին։ Ոչ ոք դուրս չեկավ։ Մոտեցան տանը։ Դռները փակ էին։*

*— Գնանք,—ասաց Աշոտը։*

*— Իսկապես որ ոչ ոք չկա,—հետո ինչ-որ բան հիշելով աշխուժացավ.—Լսի՛ր, կարծեմ Սամվելը հեծանիվը նկուղում է պահում։ Տե՛ս, դուռն էլ ինչ որ բաց է,—ու նա արագ իջավ նկուղ տանող աստիճաններով։ Հրեց դուռը։—Բա՜ց է,—ուրախ բացականչեց։— Տե՛ս, հեծանիվը...*

*— Հարկավոր չէ, մի՛ վերցրու,—խնդրեց Աշոտը,—անհարմար է։*

*— Լավ... ոչինչ... կասես դու ես վերցրել... մտերիմ ընկերդ չի՞։*

*— Ինքը կգա, կխնդրենք կտա,—փորձեց համոզել Աշոտը։*

*— Դե որ կտա, էլ ի՞նչ... Հետո, ի՞նչ գիտես, երբ կգա։*

*Ստեփանը դուրս հանեց հեծանիվը և սկսեց բարձրացնել աստիճաններով։*

*Աշոտը նայում էր նրան և չգիտեր ինչ անի։ Քաշքշել, կռվել, նա չէր սիրում... չէր էլ կարող։ Նա կանգնած էր նեղ աստիճանների գլխին։*




*— Ճանապարհ տուր,—ասաց Ստեփանը։*

*Աշոտն ուզում էր ինչ-որ բան ասել, բայց Ստեփանը անմիջապես էլ շարունակեց.*

*— Դե թող, թող դուրս բերեմ... կասես, որ ինքդ ես վերցրել։ Մոտ ընկերդ է։ Ի՞նչ կա որ։*

*Ստեփանը այլևս չթողեց, որ ընկերը խոսի։ Նա ճարպկորեն դուրս բերեց հեծանիվը և քիչ անց նրանք արդեն փողոցում էին։*

*— Զգույշ, շատ հեռու չգնաս,—Ստեփանի հետևից ձայն տվեց Աշոտը։*

*— Չէ, չէ։*

*Ստեփանը հեծանիվի վրա ցատկեց և դուրս եկավ փողոց։ Աշոտը, անհանգստացած, ինքն էլ քայլեց նրա հետևից։ Ստեփանը պողոտայով արագ դեպի ցած էր սլանում։ Հեռվում, խաչմերուկում, նա շրջան կատարեց և սկսեց վերադառնալ։*

*— Զտեմնված հեծանիվ է,—տեղ հասնելով և իջնելով հեծանիվից, հևալով ասաց Ստեփանը։— Ա՛ռ, փորձի՛ր։*

*Իսկապես որ հեծանիվը կարծես մոտոցիկլետ լիներ։ Աշոտը այնպես էր սուրում... այնքան հաճելի քամի կար շուրջը...*

*«Դե լավ, ոչինչ, ինքը Սամվելին կասի... Սամվելը չի նեղանա... Ինչ լա՜վ է»։*

*Հիմա հերթը նորից Ստեփանինն է։ Այս անգամ նա քշեց փողոցով դեպի վեր և քիչ անց կորավ տեսողությունից։*

*Անցավ հինգ րոպե, տասը րոպե, բայց Ստեփանը չկար ու չկար։ Աշոտը սկսեց անհանգստանալ։ Ի վերջո նրա համբերությունը սպառվեց ու նա գնաց Ստեփանի հետևից։*

*Մի հիսուն քայլ հազիվ էր արել, երբ քիչ հեռու, փողոցի անկյունում, հայտնվեց Ստեփանը, բայց առանց հեծանիվի. գալիս էր քայլելով։*

*Աշոտը նախ վախեցավ. հետո տեսնելով, որ Ստեփանը շատ հանգիստ է, դեռ ձեռքերն էլ գրպաններում, մի քիչ սիրտ առավ։*

*— Հեծանիվն ո՞ւր է,—դեռ հեռվից ձայն տվեց նա։*

*— Ոչինչ, հիմա կգա, տվել եմ Վաչիկին։*

— Ո՞նչ Վաչիկ։

— Է՜... ընկերս է... նա էլ ի՛մ մոտիկ ընկերն է։

— Բայց...

— Որ տեսնես ո՜նց է քշում... հիմա կգա։ Հասցեն ասել եմ. Կոմիտասի 10։ Պատասխանատու եմ։ Մինչև տուն գնամ գամ, կվերադառնա։

Ստեփանը վերադարձավ կես ժամից։

— Հը՛, եկա՞վ,—հարցրեց նա Աշոտին։

— Ու՞ր է, որ...

— Չի կարող պատահել... Ոչինչ, կգա, ինչքան է անցել որ...

— Կես ժամ է,—հուզված ասաց Աշոտը։

— Կես ժա՜մ... է՜, ոնց որ ուշացավ,—սրտնեղեց Ստեփանը։

— Ինչո՞ւ տվեցիր,—արդեն չհամբերեց Աշոտը։

— Է՜, տղան խնդրեց, ո՞նց չտայի։

— Առանց հարցնելու...

— Լավ, հիմա դու էլ Սամվելից չես հարցրել։ Վաչիկն էլ իմ մոտիկ ընկերն է։

Անցել էր երեք ժամ։ Արդեն մթնում էր։

Փողոցի անկյունում, հիմա արդեն Աշոտի և Ստեփանի հետ, սպասում էր և Սամվելը, որն արդեն տուն էր վերադարձել... Սպասում էր և Վաչիկը... Վաչիկն էլ Սամվելի, Աշոտի ու Ստեփանի նման իր մոտիկ ընկերն ուներ։ Նա էլ իր հերթին հեծանիվը վստահել էր նրան՝ Հրանտին։

Բոլորն էլ լուռ սպասում էին։ Բոլորն էլ իրարից նեղացած էին, գրեթե խռով։ Վերջապես փողոցի հեռվում հայտնվեց հեծանիվը։

Բոլորն աշխուժացան։

Բայց երբ հեծանիվը մոտեցավ, նրանք նորից հուսահատվեցին։ Հեծանվորդը բոլորին անծանոթ էր։

— Ես Լևոնն եմ,—ասաց նորեկը.—Կոմիտասի 10 համարը չէ՞։

— Տանն է,—շտապ պատասխանեց Աշոտը։

— Իմ հեծանիվն է,—ուրախացավ Սամվելը։

— Ես Գևորգի ընկերն եմ,—հեծանիվը տղաներին հանձնելով՝ ասաց Լևոնը։

— Գևորգն ո՞վ է,— հարցրեց Վաչիկը։

— Գևորգը Հրայրի ընկերն է։

— Հրայրն ո՞վ է,—հարցրեց Ստեփանը։

— Հրայրը՞... ճիշտն ասած, ես էլ չգիտեմ... Նա էր այս հեծանիվը տվել Գևորգին։ Նա Հրանտի ընկերն է։

— Իսկ Հրանտն ո՞ւր է,—վերջապես ընկերոջ հետքը գտնելով՝ հարցրեց Վաչիկը։

— Դե, Հրանտը հեծանիվը տվել էր Հրայրին, Հրայրն էլ տվել էր Գևորգին։ Գևորգն էլ, դե, իմ մոտիկ ընկերն է... ուզեցի, տվեց։

— Տեսա՞ր, որ ասում էի,—ուրախ բացականչեց Ստեփանը։—Բոլորս էլ ընկերներ ենք, չէ՞։

Սամվելի հայրը, որ քիչ հեռու կանգնած լսում էր տղաներին, հարցրեց.



—Լևոն, իսկ քեզանից ոչ ոք հեծանիվ չուզե՞ց։

— Համլետն ուզեց, բայց...

— Ինչու՞ չտվեցիր։

— Դե, ինչպե՞ս կարող էի։

— Իսկ նա չնեղացա՞վ քեզանից։

— Չէ՛, ինչու՞... Համլետը իմ շատ մոտիկ ընկերն է։—Պատասխանեց Լևոնը։

# ՆԱԲՈՒԳՈԴՈՆՈՍՈՐ

ՌԱՖԱՅԵԼ ԱՐԱՄՅԱՆ

Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Ես հին աշխարհի պատմությունը չգիտեմ և նախանձում եմ բոլոր նրանց, ովքեր զբաղվում են պատմության այդ շրջանով: Բայց ես գիտեմ մի բան, որ նրա՛նք չգիտեն. ես մի անուն ունեմ պահած, որ երբ տալիս եմ, անմիջապես փոխադրվում եմ հին ժամանակները: Նրանք երևի այդ անունը և էլի ուրիշ շատ անուններ գիտեն, բայց իմը ուրիշ է, նա անմիջապես ինձ տեղափոխում է դարերի խորքը, իսկ նրանցը՝ ոչ մի տեղ:

Ես այդպես եմ ասում, որովհետև շատ անգամ հետևել ու նկատել եմ, որ այդ պատմաբանները, երբ պատմում են հին աշխարհի մասին, ոչ մի դող չեն զգում, իսկ ես իմ գիտեցած անունը կրկնելիս դող եմ զգում և ինչ-որ հնություն, քարի բույր:

Դա զարմանալի անուն է, այն կարծես թասերի ու բարիտոնների միջոցով է արտաբերվում: Չեք հավատո՞ւմ, հապա ուշադիր եղեք, լավ լսեք, ես հիմա արտաբերում եմ.

ՆԱԲՈՒԳՈԴՈՆՈՍՈՐ:

Զարմանալի է, չէ՞. այդպիսի բասա-բարիտոնային անուններ հիմա չկան:

Միայնակ նստել ու մտածում էի այդ մասին, երբ հանկարծ դռան զանգը հնչեց: Հարևանիս տղան էր: Նա հաճախ է գալիս ինձ մոտ:

— Բարև ձեզ, քեռի...

Ես սարսափով սպասեցի, որ նա հիմա անունս կտա, իսկ իմ անունը ինչ-որ սուլոցներից է կազմված, կարծես սուլում են շչակները, շտապ օգնության, հրշեջ մեքենայի սիրենաները: Քանի դեռ հին աշխարհից մեզ հասած ՆԱԲՈՒԳՈԴՈՆՈՍՈՐ անունը չգիտեի, իմը տանելի էր թվում, իսկ այժմ ամեն անգամ սարսափով եմ լսում սուլոցներից կազմված, ականջ ծակող իմ անունը: Հարևանիս տղան անունս չտվեց, այլ անմիջապես թևի տակից հանեց հին աշխարհի պատմության դասագիրքը և ասաց.

— Ես այս առարկան բո՛լորովին չեմ հասկանում: Մայրիկը խնդրեց, որ դուք ինձ օգնեք, բացատրեք:

Հարևանները իմ մասին մեծ կարծիք ունեն, և ես դրանից շոյված եմ զգում: Տղայի խոսքերը հպարտությամբ լցրին հոգիս, և ես ասացի.

— Իսկ դու երբ կարդում ես դասը, անունները քեզ ոչինչ չե՞ն ասում:

Տղան մտածեց ու ասաց.

— Ես անունները չեմ հիշում:

— Դրանից էլ հեշտ բան,— ուրախացած բացականչեցի ես,— ա՛յ, քո գրքում երևի անպայման այս անունը պետք է լինի, խնդրում եմ ուշադիր եղիր և աշխատիր հիշել:

Ես թոքերս օդով լցրեցի ու խորհրդավոր, թանձր, կրծքային ձայնով արտաբերեցի.

ՆԱԲՈՒԳՈԴՈՆՈՍՈՐ:

Տղան զարմացած նայեց ինձ: Նա սկզբում չհասկացավ, թե ինչ է նշանակում այս ամենը, բայց ես օգնության հասա, որովհետև մայրը խնդրել էր օգնել:

— Դու երբևիցե նվագախմբի հետևից գնացե՞լ ես,—հարցրեցի տղային:

— Իհարկե:

— Ուրեմն կհասկանաս: Սա զարմանալի անուն է, կարծես թասերով ու բարիտոններով է արտաբերվում:

Տղան ծիծաղեց, ուրախացավ և մի քանի անգամ կրկնեց.

ՆԱԲՈՒԳՈԴՈՆՈՍՈՐ, ՆԱԲՈՒԳՈԴՈՆՈՍՈՐ, ՆԱԲՈՒԳՈԴՈՆՈՍՈՐ:

— Այդ ՆԱԲՈՒԳՈԴՈՆՈՍՈՐՆ արքա է եղել, ես չգիտեմ որ երկրում և որ ժամանակներում, բայց դա ինչ կարևոր է,—սկսեցի ես իմ ուսուցչությունը,— կարևորն այն է, որ զարմանալի անուն է, երբ շատ ես կրկնում, թվում է, թե հազարավոր տարիներ ետ ես գնում և ապրում այն ժամանակներում, երբ ապրել է այդ ՆԱԲՈՒԳՈԴՈՆՈՍՈՐ արքան:

Երբ ես այս ամենը ասում էի, թերևս մազերս փշաքաղվել էին ու աչքերս սարսափով լցվել, այլապես ինչո՞ւ մի հին ու մեռած արքայի անուն պետք է այդպես ուժեղ տպավորվեր տղայի մտքում:

Նա ուշադիր լսեց ինձ ու ասաց.

— Այդպես է:

Հետո տղան իր հերթին նորից մի քանի անգամ կրկնեց հին աշխարհից մեզ հասած այդ անունը, և ես նկատեցի, որ նրա մազերը իմ մազերի նման փշաքաղվում են, իսկ աչքերը իմ աչքերի նման՝ սարսափով լցվում:

Փակելով դասագիրքը տղան շնորհակալություն հայտնեց ու գնաց:

*Այդ օրը ես ուրախ էի. վերջապես գտա մեկին, որին սովորեցրի, թե ինչպես կարելի է Հին աշխարհի պատմությամբ զբաղվել, ու մի խորհրդավոր անուն կրկնելով՝ տեղափոխվել դարերի խորքը:*

*Ամիսներ անցան, եկան դպրոցականների արձակուրդի օրերը: Մի օր էլ ես, հոգնած ու մտազբաղ, աշխատանքից վերադառնում էի տուն, երբ միջանցքում հանդիպեցի իմ հարևանուհուն:*

*— Բարև ձեզ,— ասացի ես, ինչպես վայել է ամեն մի քաղաքավարի տղամարդու, իսկ նա բարկությամբ*



*նայեց ինձ ու մռնչաց. այո՛, այո՛, պարզապես մռնչաց.*

*— ՆԱԲՈՒԳՈԴՈՆՈՍՈՐ:*

*Մի պահ չհասկացա, թե ինչու էր նա այդքան զայրացած, իսկ հետո զարմացա, որ իմ հարևանուհին էլ գիտի այդ հնարույր անունը: Ես պարզապես մոռացել էի, որ ամիսներ առաջ նրա տղան հին աշխարհի պատմության դասեր էր վերցրել ինձանից, և հիմա մի անբացատրելի շփոթմունքի մեջ կանգնել ու չէի կարողանում հասկանալ հարևանուհուս բարկության պատճառը:*

*Այդպես կանգնել ու մնացել էի անշարժ շենքի մուտքի առջև, երբ սանդուղքների վրա տեսա հարևանուհուս ամուսնուն, որն երևի շտապում էր հասնել կնոջը: Նա անգամ կնոջ հետ տեղ գնալիս հետևից էր քայլում: Ես պատրաստվեցի բարևել հարևանուհուս ամուսնուն, բայց նա կանխեց ինձ ու իր կնոջից ավելի զայրագին մռնչաց.*

*— ՆԱԲՈՒԳՈԴՈՆՈՍՈՐ:*

*Այ քեզ բա՜ն. ինչո՞ւ և ի՞նչ պատճառով սրանք ինձ բարևելու փոխարեն մռնչում են և որտեղի՞ց գիտեն բասա-բարիտոնային այս անունը, որն արտաբերելիս սկսում տեղափոխվում ես դարերի խորքը: Այսպես մտածեցի ես ու դեռ հայացքով երկար ժամանակ ճանապարհելով ամուսիններին՝ դանդաղ բարձրացա վեր: Սանդուղքների վրա փորձեցի հիշել, թե արդյոք նրանց չե՞մ պատմել այս մասին, բայց ոչինչ չհիշեցի:*

*Մեր հարթակում ես հանդիպեցի հարևանիս տղային. նա կանգնած էր իմ դռան մոտ ու սպասում էր:*

*— Բարև ձեզ, քեռի...*

*Ես փակեցի ականջներս, որ չլսեմ սուլոցներով լեցուն անունս և ժպտացի:*

*— Բարև քեզ, ՆԱԲՈՒԳՈԴՈՆՈՍՈՐ,— ասացի ես մոռացած, որ տղային, այլ անունով են կանչում. դրանում մեղավոր էին նրա ծնողները, եթե չհիշեցնեին այդ անունը, երևի ես տղային չշփոթեի վաղուց մեռած արքայի հետ:*

*Տղան չվիրավորվեց:*

*— Այդ ՆԱԲՈՒԳՈԴՈՆՈՍՈՐԻ պատճառով,— ասաց տղան,— ես հին աշխարհի պատմությունից «երկու» ստացա:*

*— Ա՜հ,— բացականչեցի ես, միայն հիմա գլխի ընկնելով, թե ինչու տղայի մայրը և հայրը բարևելու փոխարեն մռնչացին ինձ վրա,— հետո՞,— ասացի ես:*

*— Հետո ոչինչ,— ասաց տղան, «երկու» ստացա ու վերջ, բայց նրանք չգիտեն, որ հիմա, այդ անունը տալուց ես տեղափոխվում եմ դարերի խորքը:*

*— Դա լավ է, շատ լավ,— ուրախացած ասացի ես ու մոռացա, որ քիչ առաջ նրա մայրը և հայրը փորձեցին վիրավորել ինձ, ասում եմ փորձեցին, որովհետև ես չվիրավորվեցի, այլ զարմացա:*

*Երբ արդեն տանն էի ու թիկնաթոռում թաղված, հանկարծ մտածեցի, որ ես ու իմ հարևանի որդին թեպետ չգիտենք հին աշխարհի պատմությունը, բայց գիտենք մի բան, մի անուն, որ մեզ տանում է հնարույր, քարի հոտ ունեցող դարերի խորքը:*

*Դա զարմանալի անուն է, այն կարծես բասերի ու բարիտոնների միջոցով է արտաբերվում: Ձե՞ք հավատում, դե ուրեմն ուշադիր եղեք, ես հիմա կըրկնում եմ նորից.*

*ՆԱԲՈՒ-ԳՈԴՈ-ՆՈՍՈՐ:*

## ՍԵՆՈՆ

ՄԱՄԻԿՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Լույսը վառել, նստել Սենոն
Ու կարդում էր իր դասը նոր,
Ինչպես եղավ, մեկ էլ հանկարծ
Էլեկտրական լամպը հանգավ։

Խավարի մեջ կորած սենյակ,
Ինքը այնտեղ մեն ու մենակ,
Տղան իսկույն դողաց վախից,
Ու կարծես մեկն ասաց՝ փախի՜ր։

Էլ ո՞նց մնար, իրեն շտապ
Մի կերպ գցեց նա պատշգամբ,
Գնաց արագ, մթության մեջ
Նստեց իր մոր կողքին խեղճ-խեղճ։

Իսկ երբ մայրը ասաց.—Վախկոտ,
Ինչո՞ւ փախար եկար ինձ մոտ։—
Սենոն թե.—Հա՛, դա էր պակաս,
Եկա, որ դու չվախենաս։

## ՆԱԶԱՐԸ

ԱՐԱՐԱՏ ԱՅՎԱԶՅԱՆ

Թեքում է նա իր ճամփան,
Երբ մի մողես է տեսնում,
Կարծում է, թե խաղողը
Բոստանի մեջ է հասնում։
Ձմերուկը նա գիտի
Ծառի վրա է բուսնում,
Չի տարբերում իրարից
Ոսկի ցորենն ու գարին,
Չի տարբերում իրարից
Աղվեսին ու ճագարին։

Սարսափում է, երբ հեռվից
Մի բողար է կլանչում,
Երբ աքաղաղն է կանչում,
Գոմից կովը բառաչում։
Այգիների, բոստանի
Ճամփան նա չի ճանաչում
Ու չի ջոկում իրարից
Ճակնդեղն ու գազարը,
Եվ ասում են պատանի
Բնասեր է Նազարը։

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ԳԼԽԱՎՈՐ ԳԵՏԵՐԸ

Վ. ԴՐԱԳՈՒՆՍԿԻ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Թեև շուտով կլրանա իմ ինը տարին, բայց միայն երեկ ես գլխի ընկա, որ, համենայնդեպս, դասերը պետք է սովորել։ Սիրում ես, թե չես սիրում, ուզում ես, թե չես ուզում, ալարում ես, թե չես ալարում, բայց դասերը սովորել պետք է։ Դա օրենք է։ Թե չէ՝ այնպիսի փորձանք կգա գլխիդ, որ տան ճանապարհը կմոռանաս։ Ես, օրինակ, երեկ չհասցրի դասերս պատրաստել։ Մեզ հանձնարարված էր սովորել հատված Նեկրասովի մի ոտանավորից և Ամերիկայի գլխավոր գետերը։ Իսկ ես, սովորելու փոխարեն, բակում օդապարուկ էի բաց թողնում տիեզերք։ Բայց նա, այնուամենայնիվ, տիեզերք չհասավ, որովհետև նրա պոչը չափազանց թեթև էր և դրա համար էլ հոլի պես պտտվում էր։ Այդ մեկ։ Երկրորդը՝ թելս քիչ էր, և ես ողջ տունը տակնուվրա արի, հավաքեցի բոլոր թելերը, ինչ որ կային, մայրիկի կարի մեքենայի վրայից էլ հանեցի, բայց պարզվեց, որ

դարձյալ քիչ է։ Օդապարուկը բարձրացավ, հասավ մինչև ձեղնահարկ և այնտեղ էլ մնաց։

Եվ ես այնպես տարվեցի այդ օդապարուկով ու տիեզերքով, որ մոռացա աշխարհում ամեն ինչ։ Թաղն այնքան հետաքրքրեց ինձ, որ ամենևին չէի մտածում ինչ-որ դաս պատրաստելու մասին։ Սակայն բանից դուրս եկավ, որ չպետք է մոռանայի իմ գործերը, որովհետև աշխարհով մեկ եղա խայտառակ։

Առավոտյան ես ուշ զարթնեցի և, երբ վեր թռա անկողնից, շատ քիչ ժամանակ էր մնացել... Բայց ես կարդացել էի, թե ինչպես ճարպկորեն են հագնվում հրշեջները, նրանց մոտ չկա ոչ մի ավելորդ շարժում, և դա այնքան ինձ դուր եկավ, որ ես ամռանը ամիսուկես մարզվեցի արագ հագնվելու համար։ Եվ այսօր, երբ վեր թռա և նայեցի ժամացույցին, իսկույն գլխի ընկա, որ պետք է հագնվել այնպես, ինչպես հրդեհի ժամանակ։ Ես մեկ րոպե քառասուն վայրկյանում հագնվեցի ինչպես հարկն է, միայն կոշիկներս, կապելիս անցքերի մի մասը բաց թողեցի։ Մի խոսքով, դպրոց հասա ժամանակին և դասարան նետվեցի Օլգա Նիկոլաևնայից մի վայրկյան շուտ։ Այսինքն՝ նա իր համար հանգիստ գալիս էր միջանցքով, իսկ ես վազ տվեցի հանդերձարանից։ Հենց որ հեռվից նկատեցի Օլգա Նիկոլաևնային, ամբողջ ուժով սկսեցի վազել և, երբ մինչև դասասենյակ մնացել էր ընդամենը հինգ քայլ, անցա Օլգա Նիկոլաևնայից և նետվեցի դասարան։ Եվ երբ նա ներս մտավ, իմ գրքերն արդեն սեղանի վրա էին, իսկ ես հանգիստ նստած էի Միշայի կողքին, ասես ոչինչ չէր պատահել։ Օլգա Նիկոլաևնան ներս մտավ, մենք ոտքի ելանք և բարևեցինք նրան։ Բոլորից բարձրաձայն բարևեցի ես, որպեսզի նա տեսնի, թե որքան քաղաքավարի եմ։ Բայց նա դրա վրա ուշադրություն չդարձրեց և անմիջապես ասաց.

— Կոտյո՛վ, գրատախտակի մոտ։

Իսկույն տրամադրությունս ընկավ, որովհետև հիշեցի, որ մոռացել եմ դասերս սովորել։ Ես բոլորովին չէի ուզում վեր կենալ, բաժանվել հարազատ սեղանից։ Կարծես կառչել էի նստարանից։ Բայց Օլգա Նիկոլաևնան սկսեց շտապեցնել ինձ.

— Կոտյո՛վ, ի՞նչ է պատահել, մի՞թե ես քեզ չեմ կանչում։

Եվ ես գնացի գրատախտակի մոտ։ Օլգա Նիկոլաևնան ասաց.

— Արտասանի՛ր։

Այսինքն ես պիտի արտասանեի հանձնարարված ոտանավորը։ Բայց չգիտեի։ Ես նույնիսկ լավ չէի հիշում, թե որն է հանձնարարված։ Դրա համար էլ իսկույն մտածեցի, որ գուցե Օլգա Նիկոլաևնան էլ է մոռացել, թե ինչ է տրված ու չի նկատի՝ ինչ եմ արտասանում։

Եվ աշխուժով սկսեցի.

> Հողմը մեգով երկինքն առնում,
> Պտտում է բուքը ձյան,
> Մերթ մանկան պես լաց է լինում,
> Մերթ ոռնում է գերթ գազան։

— Դա Պուշկինից է,— ասաց Օլգա Նիկոլաևնան։

— Այո՛,— ասացի ես,— Պուշկինից է. Ալեքսանդր Սերգեևիչից։

— Իսկ ես ի՞նչ եմ հանձնարարել,— ասաց նա։

— Այո՛,— ասացի ես։

— Ի՞նչ «այո»։ Ես ի՞նչ եմ հանձնարարել, Կոտյո՛վ, քե՛զ եմ հարցնում։

— Ի՞նչ,— ասացի ես։

— Ի՞նչ «ինչ»։ Ես քեզ հարցնում եմ, ի՞նչ եմ հանձնարարել։

Այստեղ Միշան միամիտ ձևանալով ասաց.

— Մի՞թե նա չգիտի, որ Նեկրասով եք հանձնարարել։ Նա հարցը չհասկացավ, Օլգա Նիկոլաևնա։

Ահա ինչ է նշանակում հավատարիմ ընկեր։ Այդպիսի խորամանկությամբ Միշան ինձ հուշեց։ Իսկ Օլգա Նիկոլաևնան արդեն բարկացավ։

— Սլոնո՛վ, չհամարձակվես հուշել։

— Այո՛,— ասացի ես,— դու ինչո՞ւ ես մեջ ընկնում, Միշա։ Առանց քեզ ես չգիտե՞մ, որ Օլգա Նիկոլաևնան Նեկրասով է հանձնարարել։ Ես պարզապես մտքի մեջ էի ընկել, իսկ դու շփոթեցնում ես։

Միշան կարմրեց և երեսը շուռ տվեց ինձանից։ Ես դարձյալ մնացի մեն-մենակ Օլգա Նիկոլաևնայի հետ։

— Հը՞,— ասաց նա։

— Ի՞նչ,— ասացի ես։

— Վերջ տուր քո այդ «ինչ»-երին։

Ես արդեն նկատեցի, որ նա հիմա կբարկանա ինչպես հարկն է։

— Արտասանի՛ր ոտանավորը։

— Ի՞նչ,— ասացի ես,

— Ոտանավորը, իհարկե,— ասաց նա։

— Ը՜հը՛, հասկացա։ Ոտանավորը, ուրեմն արտասանե՞լ,— ասացի ես։ Կարելի է։— Եվ բարձրաձայն սկսեցի.— Նեկրասովի բանաստեղծությունը։ Բանաստեղծի։ Մեծ բանաստեղծի։ Ռուս մեծ բանաստեղծ Նեկրասովի։ Բանաստեղծությունը...

— Հետո՞,— ասաց Օլգա Նիկոլաևնան։

— Ի՞նչ,— ասացի ես։

— Արտասանի՛ր, շո՛ւտ,— բղավեց խեղճ Օլգա Նիկոլաևնան։— Քեզ եմ ասում, արտասանի՛ր։ Վերնագիրը...



Մինչ նա բղավում էր, Միշան հասցրեց ինձ հուշել առաջին բառը։ Նա շշնջաց առանց բերանը բացելու, բայց ես նրան հիանալի հասկացա։ Դրա համար ես համարձակ ոտքս առաջ փոխեցի և արտասանեցի.

— Գյուղացին։

Բոլորը լռեցին, և Ռաիսա Իվանովնան նույնպես։ Նա ուշադիր նայում էր ինձ, իսկ ես ավելի մեծ ուշադրությամբ՝ Միշային։ Միշան բթամատով ու ցուցամատով ինչ-որ նշան արեց, և ես իսկույն հիշեցի վերնագիրն ու ասացի.

— Կոլտ գյուղացին։

Բոլորը ծիծաղեցին, Ռաիսա Իվանովնան ասաց.

— Բավական է, Կորաբլյո՛վ... Զանք մի՛ թափիր, բան դուրս չի գա։ Թե որ չես իմանում, քեզ մի՛ խայտառակիր։—Հետո ավելացրեց.—Հիշո՞ւմ ես, երեկ մենք ամբողջ դասարանով պայմանավորվեցինք, որ կկարդանք հետաքրքիր գրքեր նաև ծրագրից դուրս։ Երեկ դուք որոշեցիք սովորել Ամերիկայի բոլոր գետերի անունները։ Դու սովորե՞լ ես։

Իհարկե, ես չէի սովորել։ Այդ օղապարուկը ամբողջ կյանքս թունավորեց։ Ես ուզեցի ամեն ինչ պատմել Ռաիսա Իվանովնային, բայց դրա փոխարեն հանկարծ, անգամ ինձ համար անսպասելի, ասացի.

— Իհարկե, սովորել եմ։ Հապա ինչպե՞ս։

Նա ասաց.

— Դե ուրեմն, փոխիր այն սարսափելի տպավորությունը, որ թողեցիր Նեկրասովի բանաստեղծությունն արտասանելիս։ Ասա՝ ո՞րն-է Ամերիկայի ամենամեծ գետը, և ես քեզ բաց կթողնեմ։

Այդ պահին վիճակս սաստիկ վատացավ։ Նույնիսկ փորս սկսեց ցավել. ազնիվ խոսք։ Դասարանում իշխում էր զարմանալի լռություն։ Բոլորն ինձ էին նայում։ Իսկ ես նայում էի առաստաղին և մտածում, որ հիմա արդեն անպայման կմեռնեմ։ Մնաս բարով, կյանք։ Եվ այդ վայրկյանին նկատեցի, որ վերջին ձախ շարքում Պետկա Գորբուշկինը ինձ ցույց է տալիս թղթե երկար ժապավեն, որի վրա ինչ-որ բան է գրված թանաքով, հաստ-հաստ է գրված, երևի նա մատով էր գրել։ Ես սկսեցի նայել այդ տառերին և վերջապես կարդացի դրանց մի մասը։ Այստեղ Ռաիսա Իվանովնան նորից դարձավ ինձ.

— Հը՛, Կորաբլյո՛վ, ո՞րն է, ուրեմն, Ամերիկայի գլխավոր գետը։

Ինձ մոտ իսկույն երևան եկավ վստահություն, և ես ասացի.

— Միսի-փիսի։

Էլ չեմ պատմի, բավական է։ Թեև Ռաիսա Իվանովնան այնքան ծիծաղեց, որ աչքերն արտասվեցին, բայց ուզածիդ պես ինձ մի «երկուս» դրեց։ Եվ հիմա ես երդվել եմ այսուհետև դասերս միշտ սովորել, մինչև խոր ծերություն։

Թարգմ. ԵՆՈՔ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

# Ո՞ՒՐ ԳՆԱՑԻՆ ԿԱՐԱՊՆԵՐԸ

ԳՐԻԳՈՐ ՔԵՇԻՇՅԱՆ

Աղջիկը պինդ բռնել էր հոր ձեռքը։ Եվ դա ոչ այնքան պաշտպանվելու համար, որքան հպարտության։ Հոր հետ նա ավելի հպարտ էր քայլում փողոցում, մանավանդ, երբ տարբեր մարդիկ բարևում էին հորը և հայրը նրանց պատասխանում էր.

— Բարև, բարև։

— Բարի օր, Աշոտ։

— Ինչպե՞ս ես, Լևոն։

Աղջիկը նայում էր նրանցից յուրաքանչյուրի հետևից ու ամեն անգամ հարցնում հորը.

— Ո՞վ է, հայրիկ։

— Ծանոթ է։

Հետո նորից.

— Ո՞վ է, հայրիկ։

— Մի ժամանակ միասին ենք աշխատել։

Մի երրորդը.

— Ո՞վ է, հայրիկ։

— Ընկերս է, համալսարանում միասին ենք սովորել։

Աղջիկը հպարտանում էր նաև հոր ծանոթներով ու ընկերներով։

— Այդքան շատ ընկե՞ր ունես, հայրիկ։

— Շա՞տ։ Նրանք երբեք շատ չեն լինում։ Պիտի ավելի շատ ունենալ։

— Ինչքա՞ն։

— Ինչքա՜ն հնարավոր է։

— Հարյո՞ւր հատ։

— Որոշակի թիվ չկա։ Մարդ կա մի քանիսն է ունենում, մարդ կա՝ տասնյակներով։

— Դու քանի՞սն ունես։

— Չեմ հաշվել, և երբեք կարիք չկա, որ հաշվես։

Նրանք զրուցելով հրապարակից բարձրացան և Թումանյանով թեքվեցին ձախ։ Ձյունը նստել էր մայթերին և ոտքերի տակ ճռռում էր։ Շատ ցուրտ էր, բայց օդը մաքուր էր։ Հաճելի էր տաք վերարկուով թափառել փողոցներում և զրուցել հատկապես այնպիսի մեկի հետ, ինչպես այդ աղջնակն էր. որի համար ամեն ինչ հարց էր և պատասխանի կարիք ուներ։ Երբ հայր ու աղջիկ մենակ էին լինում, ոչ մի բան ձանձրալի չէր դառնում։ Եվ հայրը մեծ հաճույքով ընկնում էր իր աղջկա աշխարհը, ապրում այդ աշխարհում, ուրախանում այդ աշխարհի համար։

Եվ քանի որ այդ պտույտների ժամանակ աղջիկն էր առաջնորդում հորը, նա քաշեց հոր ձեռքից և տարավ դեպի կարապների լճակը։ Նրանք սկսեցին արագ քայլել, որովհետև աղջիկը ուզում էր վազել։ Լճափին նրանք հանկարծ կանգ առան, որովհետև աղջիկը հանկարծ կանգնեց։ Զարմացած ու խոշորացած աչքերով նա նայում էր լճակին, որ այլևս լճակ չէր։ Ամեն ինչ մնացել էր նույնը. և՛ լճակի ձևը, և՛ ծառերը, և՛ անցուղիները։ Բայց և ամեն ինչ փոխվել էր. ծառերը մերկ էին, կանաչ խոտի փոխարեն լճակը շրջապատված էր սպիտակ ձյունով։ Վախվորած ճնճղուկները դեսուդեն էին թռչկոտում, իսկ լճակը... Լճակը դատարկ էր։ Ջուր չկար։ Լճակի սառած հատակը չմուշկների հետքերով էր գծագրված։



Աղջիկը կանգնեց քարացած, ապա հանկարծ շուռ եկավ հոր կողմը և հարցրեց կտրուկ.

— Հայրիկ, ո՞ւր գնացին կարապները։

Հայրը հասկացավ աղջկա հուզումն ու հիասթափությունը։ Նա հասկացավ այդ աչքերի հարցի ամբողջ խորությունը և փորձեց նրան ոչ միայն մխիթարել, այլև հասկացնել.

— Իսկ դու, աղջիկս, ասա ինձ, ո՞ւր են գնացել ամռանը լճակում լողացող երեխաները։

— Հիմա ցուրտ է, նրանք իրենց տներումն են։

Կարապների համար էլ ցուրտ է։

— Նրա՞նք էլ իրենց տներումն են,— հարցրեց աղջիկը։

— Ոչ այնպես, ինչպես երեխաները, բայց նրանք էլ իրենց տներումն են։

— Իրենց ծնողների մո՞տ։

— Ոչ այնպես, ինչպես երեխաները,— պատասխանեց հայրը։— Մարդիկ նրանց համար ձմեռային բներ են պատրաստել, և կարապները ձմեռները ապրում են այդ բներում։

— Ո՞վ է նրանց կերակրում, ուզում եմ ասել, ո՞վ է նրանց ճաշ տալիս։

— Մարդիկ նրանց կեր են տալիս։

— Իսկ գարնանը նորից գալո՞ւ են։



Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԱՐԱՄԲԵՅԱՆԻ

— Անպայման։

— Ե՛վ սպիտակնե՞րը, և՛ սևե՞րը։

— Բոլոր անցյալ տարվա կարապները և ուրիշ նորեր։

— Այդ ուրիշ նորերը որտեղի՞ց պիտի գան։

— Կարող են գալ որևէ տեղից, կարող են ձագ կարապներ լինել։

Աղջիկը մի պահ մտածեց։ Հայրը չխանգարեց նրան։ Այդպիսի պահերին հայրը երբեք չէր խանգարում, որովհետև մտածելը մեծացնում, հասունացնում է երեխաներին։

— Հայրիկ,— աղջիկը գտավ հարցը, — հայրիկ, մարդիկ ինչո՞ւ են խնամում կենդանիներին։

— Որովհետև մարդիկ բնության տերերն են։

Աղջկա աչքերը մի պահ զարմանք և շվարում արտահայտեցին։ Հետո հասկացան։ Հարցը պատրաստ էր։

— Ես մարդ եմ, չէ՞, հայրիկ։

— Անշուշտ, աղջիկս։

— Ես բնության տե՞րն եմ։

— Այո՛, աղջիկս։

— Ուրեմն,— նա մի փոքր էլ մտածեց, ապա վճռական շարունակեց նախադասությունը,— ուրեմն կարապները իմն են։

— Այո՛, կարապները քոնն են,— պատասխանեց հայրը։ Աղջիկը ուզում էր ինչ-որ բան ասել, նրա աչքերը փայլեցին, բայց հայրը շարունակեց.— Քոնն են, բայց միևնույն ժամանակ նաև ուրիշներինը։ Բոլոր կարապները ու բոլոր թռչունները, բոլոր տներն ու բոլոր խանութները, բոլոր ավտոներն ու բոլոր տիկնիկները բոլորինն են, որովհետև մարդիկ բնության տերերն են։

Աղջիկը լռեց, իսկ հայրը շարունակեց.

— Սակայն մարդիկ միևնույն ժամանակ բնության պահապաններն են։ Մարդիկ պարտավոր են հոգ տանել բնության ծառերի ու ծաղիկների, կենդանիների և թռչունների մասին։

— Եվ կարապների՞։

— Անշուշտ, նաև կարապների։ Կարապները ամենագեղեցիկ թռչուններն են։

Աղջիկը նորից մտածեց և գտավ առարկությունը.

— Բայց բոլոր մարդիկ այդ մասին հոգ չեն տանում։ Ամառը ես մի տղա տեսա, որ ծառ էր ջարդում, իսկ մի ուրիշը թռչուններին քար էր գցում.

— Նա չար տղա է եղել, նրան պետք է դաստիարակել։

— Իսկ եթե մեծ մարդիկ են վնասում բնությա՞նը։

— Միևնույն է, պետք է նրանց էլ դաստիարակել։

— Նրանց ի՞նչ պետք է անել, հայրիկ։

— Պետք է նրանց լրիվ մարդ դարձնել։

— Ինչպե՞ս են մարդուն լրիվ մարդ դարձնում։

— Դժվար աշխատանք է, բայց անհրաժեշտ է։— Հայրը ուզեց շարունակել, բայց զգաց, որ դա շատ բարդ հարց էր ոչ միայն աղջկա, այլև իր համար։

Աղջկա դեմքը լարվեց, հոնքերը կիտվեցին: Նա նոր հարց չտվեց, սպասեց, բայց հայրը չշարունակեց:

Այդ ժամանակ աղջիկն ասաց.

— Գնանք, հայրիկ, ես մրսում եմ:

Եվ հոր ձեռքից քաշելով նա սկսեց քայլել: Հայրը հետևեց նրան: Լճափից դեռևս չէին հեռացել, երբ աղջիկը կանգնեց.

— Հայրիկ, — ասաց նա, — ինչ լավ է, որ մարդիկ կարապների համար ձմեռային բներ են պատրաստել, թե չէ հիմա պիտի մրսեին ու սառեին:

Մի պահ նորից լռեց, ապա շարունակեց.

— Չէ՞ որ նրանք տուն չունեն, տանը վառարան չունեն, չէ՞ որ նրանք հայրիկ չունեն:

Հայրը չհասցրեց պատասխանել: Աղջիկը պայծառ ու երջանիկ հայացքով նայեց հորը:

— Հայրիկ, — ասաց նա, — ես վստահ եմ, որ կարապները գնացել են իսկական մարդկանց մոտ: Ես վստահ եմ:

Հայրը շոյեց աղջկա սառած ճակատն ու այտերը:

— Եթե ես իմանայի, — ասաց աղջիկը ցածր ձայնով, կարծես ինքն իր հետ խոսելով, — եթե ես իմանայի, նրանց մեր տուն կտանեի: — Նա գլուխը բարձրացրեց, նայեց հորը ու շարունակեց. — Գոնե մեկը, չէ՞, հայրիկ:

— Անպայման, աղջիկս:



# ԱՐՋԸ

ՌԱՖԻԿ ԲԱՂԻԿՅԱՆ

Արջը անշուշտ ամբողջ տարին
Լուռ, անվրդով կքնի,
Եթե գարնան աղմուկներից
Մի տեղ հանգիստ նա գտնի:

Բայց գարունն է գալիս հանկարծ
Ու արթնացնում քնկոտին:
Եվ ելնում է նա զայրացած
Նախատելով ամենքին.

— Չեն թողնում, որ քնեմ խաղաղ,
Արթնացնում են դիտմամբ ինձ...—
Բայց քունը չի տանում, ու նա
Դուրս է ելնում իր որջից...



# ԾԻՏԻԿԻՆ

ՍԻՐՎԵՆ ԱՐՇԱԿՈՒՆԻ

Ծիտի՛կ, ծիտի՛կ,
Ա՛յ ծիտիկ,
Բարակ տոտիկ
Պուտպուտիկ,
Մի՛ վախենա,
Մոտ արի,
Կեր այս մի բուռ
Հատիկը,
Դրա համար,
Հո գիտես,
Չի բարկանա
Տատիկը:



Նկ. ՍԵՑՐԱՆ ԽԱԹԼԱՄԱՋՅԱՆԻ

# ԵՐԱԶԸ

*ՌԱՅԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Գարնան արևի ճառագայթները դանդաղ սահում են ծառերի ճյուղերով։ Պատուհանները բաց են, թույլ քամին տարուբերում է վարագույրների նուրբ երիզները։ Արթուրը քնած չպպացնում է փոքրիկ շուրթերը։ Բակում ուրախ կչկչում է հավիկը։ Ես լսում եմ նրա զվարթ երգը և անհանգստանում, որ կրնդհատվի բալիկիս առավոտյա քաղցր քունը։ Հանկարծ երեխայի դեմքին մի ժպիտ է շողում, իսկ հավիկը ավելի բարձր է երգում։ Արթուրը բարձրաձայն ծիծաղում է։ Ծիծաղը հանկարծ քրքիջ է դառնում, ու նա արթնանում է իր իսկ ձայնից։

Նրա քնաթաթախ աչիկները ուրախ շողում են։

— Դու երա՞զ ես տեսել, — հարցնում եմ ես։

— Այո, — նորից ժպտում է Արթուրիկը՝ հիշելով իր երազը։

— Մայրիկ, այդ ի՞նչ հավ է այնտեղ երգում, — զարմացած հարցնում է նա։

— Մորաքույր Հեղինեն է երեկ գնել շուկայից։

— Մայրիկ, մայրիկ, իսկ ես երազում հավեր տեսա ու նրանցից մեկին բռնեցի, նա թևիկներով խուտուտ էր տալիս երեսս, իսկ մյուս հավը մի կողմ փախավ ու սկսեց երգել ճիշտ այնպես, ինչպես այս հավիկը։



## ՄԵՂՈՒՆ

*ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Ես մեղուն եմ ծրաջան,
Ծաղիկներից անբաժան։
Ով խելոք է, մաքրասեր,
Ով սիրում է ճիշտ խոսել,
Ով լսում է մայրիկին,
Մաքուր պահում տիկնիկին,
Նրա համար ողջ ամառ
Մեղր եմ շինում անդադար։




*ՄԱՐԻՑԱ ՎՇՏՈՒՆԻ*

Արևն այդ օրը շողում էր արտակարգ փայլով։ Երկինքն այնպես էր հստակ և այնպես կապույտ, ասես ներկված լիներ մի անհայտ վրձինով. չէր երևում ամպի ոչ մի պատառիկ։ Իսկ բակում խաղում էին երեխաները՝ անփույթ ու անհոգ։ Ոմանք գնդակ էին գլորում, ոմանք ցատկում էին պարանով, ոմանք էլ թև-թևի տված շրջում էին ու բարձրաձայն երգում։ Բակում ջրավազան կար, շուրջը գունեղ ծաղիկներ, քիչ այն կողմ՝ երկու շագանակագույն փոքրիկ ցայտաղբյուրներով։ Բակ իջավ մի աղջիկ, անունը՝ Աստղիկ։ Նա գրկել էր մի սիրուն տիկնիկ։ Աղջիկը մոտեցավ ջրավազանին ու նստեց նրա եզրին։ Ջուրը ծփում էր մեղմորեն՝ շուրջը սփռելով մանրիկ կոհակներ։

Աստղիկը զրուցում էր իր տիկնիկի հետ, երբ մոտեցան աղջիկները ու շրջապատեցին նրան։ Տիկնիկը նրանց շատ դուր եկավ։ Եվ իսկապես, նա այնպես գեղեցիկ էր և այնպիսի հրաշալի մազեր ուներ, խաղը արևի շողերի պես. աչքերը կապույտ-կապույտ, ինչպես երկինք, արտևանունքները սև ու երկար, այտերը կարմիր-կարմիր, ինչպես ծառից կախված երկու թարմ խնձորներ։ Եվ ի՜նչ հրաշալի անուն ուներ՝ Ոսկեծամիկ։ Բավական էր մի քիչ կողքի դնեիր ու մի քիչ օրորե-

իր, իսկույն կփակեր աչքերը և մուշ-մուշ քուն կմտներ: Դրա համար էր, որ աղջիկներր այնպես ջերմորեն սիրում էին Ոսկեծամիկին. նա երբեք լաց չէր լինում ու չէր հակառակվում ոչ ոքի:

— Ի՜նչ սիրուն տիկնիկ ունես, Աստղիկ,— ասաց Արևիկը՝ չկարողանալով զսպել իր հիացմունքը:

— Եվ ի՜նչ սիրուն շորեր ունի,— ասաց Սոֆիկը:

— Դու ես կարել, չէ՞,— ավելացրեց Ամալիկը՝ մատով զգուշությամբ տիկնիկի հագուստին դիպչելով:

— Այո, ես եմ կարել, բայց միայն գոգնոցը, իսկ վերնազգեստը մայրիկս է կարել,— հպարտ պատասխանեց Աստղիկը՝ ժանյակազարդ գոգնոցը աղջիկներին ցույց տալով:

— Կտա՞ս մի քիչ սիրեմ,— խնդրեց Արևիկը:

— Ինչու չէ, կտամ,— կմկմաց Աստղիկը, բայց գիտե՞ս ինչ, քնելու ժամ է, պիտի քնեցնեմ:

— Տուր ես քնեցնեմ, Աստղիկ, այնպես կամաց կօրորեմ, այ կտեսնես,— նորից թախանձեց Արևիկը:

— Ախր այս անպիտանը ուրիշի գրկում չի քնում, միշտ ես եմ քնեցնում,— առարկեց Աստղիկը և տիկնիկը ավելի ամուր սեղմեց կրծքին:

Բայց Արևիկը այնպես էր ուզում գեթ մի վայրկյան տիկնիկին իր գիրկն առնել ու օրոր ասել, որ նորից խնդրեց.

— Ես այնպես մեղմ օրոր կասեմ, Աստղիկ ջան, որ նա իսկույն քուն կմտնի ու կփակի աչքերը, ուզու՞մ ես, փորձիր:

Աստղիկը մի պահ լուռ նայեց Արևիկին, նայեց Ոսկեծամիկին, ինքն իրեն ինչ-որ բան կմկմաց, ապա տիկնիկը քնքշությամբ դրեց Արևիկի գիրկը.

— Դե լավ, վերցրու, միայն թե զգույշ եղիր, հեռու չգնաս, թե չէ, գիտես ինչ, հանկարծ կարող է մրսել ու հիվանդանալ, ինձ մոտ երբեք չի հիվանդանում:

Արևիկն իսկույն կրծքին սեղմեց տիկնիկը և, ինչ-որ մեղեդի մրմնջալով, հուշիկ քայլերով առանձնացավ ծառերի ստվերներում: Աստղիկը լուռ հետևում էր նրան:

Աղջիկները ցրվեցին և ամեն մեկը նորից զբաղվեց իր խաղով: Այդ միջոցին մոտեցավ Լուսիկը և դիմելով Աստղիկին՝ կեղծ մտերմությամբ ասաց.

— Ինչու՞ քո տիկնիկը տալիս ես ուրիշի, իսկ եթե հանկարծ շորերը պատռվեն կամ կեղտոտվեն:

— Ի՞նչ ուրիշ,— զարմացավ Աստղիկը.— նա իմ



ընկերուհին է. թող մի քիչ խաղա, նա տիկնիկ չունի։

— Ընկերուհի՞, չէ, մի պոզե՞ր,—ծոր տվեց Լուսիկը,—նա քեզ ի՞նչ ընկերուհի, նա իսկի էլ քեզ չի սիրում, չի ուզում քեզ հետ ընկերություն անել, հենց որ մի բան ես խնդրում, մի պատճառ է բռնում ու վազում տուն։ Մոռացա՞ր անցած օրը, մի՛տդ է, դու նրանից պարան խնդրեցիր խաղալու համար, իսկ նա չտվեց. «Մաշված է, հանկարծ կկտրվի», իսկ դու հիմար ես և քո ունեցածը տալիս ես ուրիշներին։

— Ի՞նչ անենք, մեկ ուրիշ անգամ կտա, Արևիկը լավ աղջիկ է, ես սիրում եմ նրան, նա իմ ընկերուհին է,—պատասխանեց Աստղիկը անփութորեն և, թողնելով Լուսիկին, վազեց Արևիկի մոտ։

Լուսիկը երկար ժամանակ մնաց իր տեղում կանգնած, նա տխրեց, անչափ տխրեց։ Ճիշտն ասած՝ նա շատ էր ուզում մտերիմ ընկերուհի ունենալ։

— Ինչո՞ւ, ինչո՞ւ ոչ ոք չի ուզում ինձ հետ ընկերանալ, իսկ ես այնպես եմ ուզում նրանց հետ խաղալ,—հազիվ լսելի ձայնով շշնջաց Լուսիկը՝ ջրավազանի շուրթին նստելով։

Երբ Լուսիկը սթափվեց իր մտքերից, բակում



Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

այլևս ոչ ոք չէր մնացել, ամենքն էլ ցրվել էին։ Բակում իշխում էր միայն արևը, ամառային տաք արևը, որն ասես կամացուկ ինչ-որ բան էր փսփսում նրա ականջին։ Լուսիկը նայեց ջրավազանի մեջ ու տեսավ այնտեղ մի աղջկա պատկեր՝ անկանոն մազերով ու խռոված դեմքով։ Ինքն իրենից սրտնեղած Լուսիկն էլ թողեց բակը ու վազեց տուն։

* * *

Հաջորդ օրը երեխաները նորից բակ իջան։ Սովորականի պես տղաները խմբվեցին ձեռքի գնդակ խաղալու, իսկ աղջիկները շարվեցին ջրավազանի շուրջը. դա նրանց ամենասիրած վայրն էր։ Նստում էին, զրուցում ու նոր միայն որոշում իրենց անելիքը։ Բայց Լուսիկը այս անգամ նրանց հետ չէր, նա կանգնել էր ամենքից հեռու, մենմենակ ու չէր համարձակվում մոտենալ։ Նա բոլորից էլ նեղացած էր, խռոված։ Բայց աղջիկները նկատեցին նրան ու մոտ վազեցին.

— Լուսիկ, ինչո՞ւ ես հեռու կանգնել, եկ միասին պարան խաղանք։

— Չէ՛, թռնոցի խաղանք,—առարկեց մեկը։

— Չէ՛, պահմտոցի,—ասաց մյուսը։

— Ավելի լավ է միասին զբոսնենք բակում,—ավելացրեց Սոֆիկը ու քաղցր ժպտաց։

— Լավ, թող այդպես լինի, եկեք զբոսնենք,—համաձայնեց Աստղիկը ու թևը գցեց Լուսիկի վզով, որը կանգնած էր լուռ ու անխոս։

Աղջիկները համաձայնեցին։ Նրանք բոլորն էլ մոռացել էին նախորդ օրվա խոսքն ու զրույցը և թև-թևի տված սկսեցին երգել ու շրջել ծառերի տակ։ Լուսիկը անչափ ուրախ էր, որ նորից ընկերուհիների հետ էր, նրանց շրջապատում։ Նրա աջ կողմում Աստղիկն էր, իսկ ձախ կողմում՝ Արևիկը։ Սոֆիկն ու Ամալիկը քայլում էին նրանց հետևից և բոլորը խմբովին երգում էին ուրախ մի երգ։

Արևն էլ ժպտաց ու բարի աչքով նայեց ամենքին, մեղմացնելով իր այրող շողերը։ Այնպես լավ էր այդ օրը բակում, այնպես լավ. տղաները գնդակ էին խաղում ու ոչ ոքի չէին նեղացնում, աղջիկները զբոսնում էին, երգ ասում բարձրաձայն, իսկ Ոսկեծամիկը քնած էր ծառի ստվերում։ Բոլորն էլ հաշտ էին, բոլորն էլ ուրախ։ Ու հենց այն պահին, երբ աղջիկները դադարեցին զբոսնելուց ու նորից շարվեցին ջրավազանի շուրջը, ծառին նստած մի ծիտ սկսեց քաղցր ծլվլալ՝ ծիվ-ծիվ, ծիվ-ծիվ... Եվ այդ ծլվլոցը միայն Լուսիկը հասկացավ...

# Ես ու Մերին

ԱՐՍԵՆ ԲԱԲԱՅԱՆ

Նկ. ԷԴՎԱՐԴ ԱԲԱՋՅԱՆԻ

Զանգը հնչում է: Ես ու Մերին վազում ենք, դուռը բաց անում. էլի մի զույգ ամուսիններ են ներս մտնում ու... առանց երեխաների:

— Բարև ձեզ:

— Բարև:

Այսօր հայրիկիս ծննդյան օրն է, նա շատ է ուրախացել: Մայրիկս էլ է ուրախացել. նա անընդհատ փարվում է հայրիկին ու կրկնում կես ուրախ, կես տխուր.

— Գևորգ ջան, քառասունդ էլ լրացավ:

Միայն ես ու Մերին ենք տխուր: Մերին իմ հորաքրոջ աղջիկն է: Մենք տխուր ենք, որովհետև հյուրերը գալիս են առանց երեխաների: Ո՞ւմ հետ խաղանք: Մենք էլ ամեն զանգը տալուն պես՝ վազում ենք դեպի դուռը, ու էլի նույնը՝ ամուսիններ առանց երեխաների:

Այ քեզ բա՜ն, կարծես թե պայմանավորվել են իրար հետ:

Ու այստեղ իմ գլխում մի ապշեցուցիչ միտք է ծագում: Ես Մերիին ասում եմ, որ մեզանից երկու հարկ վերև նույնպես ուրախություն է. Դոդոխի ծնունդն են տոնում: Այնտեղ այնքա՜ն երեխաներ կլինեն: Դոդոխն իմ հասակակիցն է. իսկական անունը Ավետիք է, Դոդոխ՝ նրա մականունն է: Մերին ասում է, որ հարկավոր է նվեր տանել:

— Դա հեշտ է,—ասում եմ,—նայիր հայրիկիս ինչքան են բերել, մի բլրի չափ:

Մերին ճանկում է մի մեծ փաթեթ, ու ես նրա ձեռքը բռնելով՝ վազում ենք վերև:

Հանկարծ փաթեթն ընկնում է նրա ձեռքից ու միջից տղամարդու անդրավարտիքը դուրս թռչելով՝ տարածվում է աստիճանների վրա:

Մերին ցած է վազում, թափ տալիս փոշին ու էլի փաթաթում թղթի մեջ:

— Դու այդ ի՞նչ ես բերել,—կիսավախեցած հարցընում եմ ես:

— Անդրա...վարտիք,—պատասխանում է նա:

— Թյո՛ւ,—ասում եմ,—բայց Դոդոխը կկորի այդ անդրավարտիքի մեջ:

— Նա քանի՞ տարեկան է,—ցրված հարցնում է Մերին:

— Ասացի իմ հասակակիցն է. ութ:

— Ետ տանենք,—առաջարկում է Մերին:

— Տանը որ տեսնեն, էլ չեն թողնի,—ասում եմ:

— Լա՛վ,—ասում է Մերին,—Դոդոխը կմեծանա, այն ժամանակ կհագնի:

Ես սեղմում եմ կոճակը:

Դուռը բաց է անում Դոդոխի մայրը:

— Ա՜,—ասում է նա,—ներս համեցեք:

Հետո հարցնում է, թե հետս աղջիկն ով է, ու ես պատասխանում եմ, որ Մերին է՝ հորաքրոջս ամենափոքր աղջիկը:



Նա համբուրում է Մերիին, ապա մեզ առաջնորդում հյուրասենյակ ու ծանոթացնում: Դոդոխը աթոռից ցած է ցատկում իսկույն ու մի բուռ կոնֆետ լցնում Մերիի գրպանը: Հետո նրա ձեռքից բռնում է ու տանում, նստեցնում իր կողքին: Ես իսկույն տեղավորվում եմ Մերիի մոտ:

— Ես Դոդոխն եմ,—ասում է նա և իսկույն ուղղում.—այսինքն՝ Ավետիքը:

Ապա մի փոքր լռելուց հետո շարունակում է.

— Ես ձմերուկ շատ եմ սիրում:

— Ես էլ կիկլոպներից շատ եմ վախենում,—կամաց ասում է Մերին:

— Իսկ ես,—ասում եմ ու չեմ հասցնում ավարտել, որովհետև Դոդոխն իսկույն ընդհատում է.

— Դու մեզ մի՛ խանգարիր: Այ, խոսիր Նունեի հետ: Նա մեր դասարանի ամենալավ աղջիկն է:

«Դոդոշ, դոդոշի մեկը,—մտածում եմ ես,—այ թե ծնունդդ կվերջանա՜: Դեռ սպասի՜ր»:

Ես իջնում եմ աթոռից ու սկսում եմ պարել ինչ-որ անծանոթ աղջկա հետ: Մի տասն անգամ տրորում եմ խեղճի ոտքերը, որովհետև պարել չգիտեմ, ճիշտ այդքան էլ ներողություն խնդրում ու նստում տեղս:

Այդ ամբողջ ժամանակ ես աչքս չեմ հեռացնում Դոդոխից ու Մերիից: Մերին իմ հորաքրոջ աղջիկն է:

Դոդոխն էլի ինչ-որ բաներ է շշնջում Մերիի ականջին, ու նա շիկնում է:

Հանկարծ մայրը Դոդոխին կանչում է: Նա վազում է խոհանոց, ու ես մոտենում եմ Մերիին:

— Մերի,—ասում եմ,—չգնա՞նք տուն,—հետո շշնջում.—Նա քեզ ի՞նչ էր ասում:

— Ոչինչ,—ասում է Մերին,—ասում էր, որ փոքր ժամանակ շատ էր վախենում փռշտկուլից:

— Նա հիմար է,—ասում եմ ես համոզելու եղանակով,—մի գլուխ հիմարություններ է դուրս տվել: Դու նրանից շատ ավելի խելոք ես, այդ ոչինչ, որ այստեղ գալիս անդրավարտիք վերցրիր, դու հո չիմացար, թե փաթեթի մեջ ինչ կա:

Ես այնքան արագ եմ խոսում, որ քիչ է մնում շունչս կտրվի: Հետո ուզում եմ էլի ինչ-որ բան ասել, մեկ էլ Դոդոխը գալիս է:

Ես հեռանում եմ և մյուս տղաների հետ լոտո եմ խաղում: Դոդոխի հայրը սեղանի շուրջը բաժակաճառ է ասում: Նա անընդհատ անդրավարտիքը վերև է քաշում, չնայած որ նա էլի ցած է սահում: Ես իսկույն որոշում եմ, որ մեր բերած նվեր-անդրավարտիքը Դոդոխի հայրը կհագնի:

Ես ուզում եմ իմ այդ հանճարեղ միտքը անպատճառ հաղորդել Մերիին ու սահում եմ նրա մոտ:



— Մերի...—սկսում եմ ես, ու սորից այդ անիծյալ Դոդոխը կտրում է խոսքս:

— Նունեն լավ աղջիկ է, մեզ մի՛ խանգարիր,—ասում է նա:

Ես չափից դուրս հուսահատվում եմ ու քիչ է մնում կռվեմ Դոդոխի հետ, բայց այդ ժամանակ ներս է մտնում մայրս ու ներողություն խնդրելով մեզ դուրս է տանում:

— Մերի, դու շուտ-շուտ արի Գևորգ քեռիենց տուն,—հասցնում է ասել Դոդոխը:

Մենք աստիճաններով ցած ենք իջնում:

— Ամբողջ մի ժամ փնտրել եմ ձեզ,—բարկանում է մայրս,—ի վերջո կռահեցի, որ այստեղ կլինեք:

Նա այդ ասում է առանց բարկանալու: Նա ուրախ է, որ այսօր հայրիկիս ծննդյան օրն է: Մայրս ամբողջ ժամանակ փարվում էր նրան ու կես ուրախ, կես տխուր կրկնում. «Գևորգ ջան, քառասուն տարիդ էլ լրացրիր»:

Ուրախ՝ նրա համար, որ հայրիկիս ծնունդն է, իսկ տխուր՝ նրա համար, որ նա արդեն քառասուն տարեկան է:

Չգիտեմ, երևի:

— Հյուրերը գնացե՞լ են,—հարցնում եմ ես:

— Ոչ բոլորը,—պատասխանում է մայրս:

Ես նայում եմ Մերիին: Նրա քունն արդեն տանում է:

Ես թեքվում եմ դեպի նա ու կամաց, որ մայրիկս չլսի, շշնջում նրա ականջին.

— Գիտե՞ս, ես ինչ մտածեցի. անդրավարտիքը Դոդոխի հայրը կհագնի:

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՊԼԱՆԻ ԴԵՐԸ ՋՈԿԱՏՈՒՄ



Աշխատել առանց պլանի, նշանակում է աշխատել փակ աչքերով, տարերայնորեն, չունենալ նպատակ, հեռանկար: Իսկ ինչպիսի՞ն պետք է լինի հետաքրքիր ու գործնական աշխատանքային պլանը:

Այն պետք է լինի շատ կոնկրետ, պարզ և հստակ, այնպես, որ յուրաքանչյուրը պատկերացնի իր անելիքը ջոկատի ընդհանուր գործում:

Աշխատանքային պլանը պետք է լինի հետաքրքիր ու բազմակողմանի, նրանում անհրաժեշտ է նախատեսել ջոկատային հավաքույթներ, սպորտային հանդիպումներ, մրցություններ, տուրիստական արշավներ, կոնկուրսներ, տարբեր ստուգատեսներ:

Իսկ ո՞վ պետք է կազմի ջոկատի աշխատանքային պլանը: Սկսնակ ջոկատավարները հաճախ մեծ սխալ են կատարում՝ ջոկատ բերելով արդեն պատրաստի, պիոներների համար գրված աշխատանքային պլան: Մինչդեռ պիոներները իրենք պետք է լինեն իրենց պլանի հեղինակները, միայն պետք է նրանց օգնել համարձակ արտահայտվելու իրենց հետաքրքրությունների և ցանկությունների մասին:



# ԻՆՉՊԵՍ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼ ԵՎ ԱՆՑԿԱՑՆԵԼ ՀԱՎԱՔՈՒՅԹԸ

Հիշի՛ր, որ հավաքույթը ոչ թե միջոցառում է պիոներների համար, այլ հենց պիոներների միջոցառումն է: Յուրաքանչյուր քառորդը 2 անգամ անհրաժեշտ է սիստեմատիկաբար անցկացնել ջոկատային հավաքույթ:

Երբեք ջոկատային հավաքույթին քո առաջադրած թեման մի՛ պարտադրիր երեխաներին, այլ այն նախապես հաստատիր ջոկատի խորհրդի նիստում:

Ձգտիր այն բանին, որ ամեն մի հավաքույթ լինի հետաքրքիր, նպատակասլաց ու գրավիչ և նպաստի մանկական կոլեկտիվի համերաշխությանը, նրա անդամների ունակությունների և հմտությունների զարգացմանը: Որպես հավաքույթի թեմա կարող ես ընտրել մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի կյանքն ու ռևոլյուցիոն գործունեությունը, կոմերիտմիության պատմությունը, հավաքույթներ՝ նվիրված հերոս պիոներներին, աշխարհի մանուկների բարեկամությանը, ընկերասիրությանը, խաղաղությանը, արվեստի տարբեր բնագավառներին, գիտությանը, տեխնիկային, սպորտին և այլն:

Ջոկատային հավաքույթի նախապատրաստման և անցկացման ամբողջ շրջանում հասիր այն բանին, որ ոչ մի պիոներ չմնա առանց հանձնարարության, որ բոլորը ակտիվորեն մասնակցեն և շահագրգռված լինեն հավաքույթի հաջողությամբ:

Պարտադիր չէ, որ հավաքույթը տեղի ունենա դպրոցում: Անհրաժեշտության դեպքում պետք է օգտագործել շեֆ հիմնարկ-ձեռնարկությունների, թատրոնների, կուլտուրայի օջախների հնարավորությունները: Դա ավելի մեծ հետաքրքրություն է առաջացնում պիոներների շրջանում:

Հավաքույթների ընթացքում խիստ պահանջկոտ եղիր պիոներական կարգապահության պահպանման հարցում (պիոներական համազգեստի առկայությունը, ջոկատի շարվելը թմբուկի տակ, շեփորի ազդարարումը, ջոկատային դրոշի ներս բերումը, զեկույցների հանձնումը):

Այս ամենը կարգապահություն և ռոմանտիկա է ավելացնում պիոներական կոլեկտիվի կյանքում:

Հավաքույթի վերջում անպայման նշիր նրա հաջողության մասին:

ՀԵՆՐԻԿ ԲԱԴԱԼՅԱՆ



# ԶՈՀՐԱԲ ՓԱՐԵՄՈՒԶՅԱՆԸ՝

## ՊԱՏԱՆԻ ԴԱՇՆԱԿԱՀԱՐՆ ՈՒ ԿՈՄՊՈԶԻՏՈՐԸ

Հայրը և տասներկու տարեկան որդին կանգնած էին կոմպոզիտորների տան մոտ: Նրանք սպասում էին կոմպոզիտորների միության նախագահին: Հայրը կարևոր բան ուներ ասելու նրան: Բայց Հայաստանի կոմպոզիտորների միություն շատերն են գալիս. շատերն են գալիս նաև երեխաների հետ: Նրանց թվում է, թե իրենց երեխաները օժտված են ստեղծագործելու շնորհքով: Բայց երբ կոմպոզիտորները ծանոթանում են այդ երեխաների գործերին, տեսնում են, որ մեծ մասամբ դրանք մանկական թոթովանքներ են: Ահա այդ էր պատճառը, որ երբ կոմպոզիտորների միության նախագահ Էդվարդ Միրզոյանը մի քանի այլ կոմպոզիտորների ուղեկցությամբ անցավ հոր ու տղայի մոտով, առանձնապես ուշադրություն չդարձրեց նրանց վրա: Նա բարևեց այցելուներին ու մտավ իր առանձնասենյակը:

Դեռ նա չէր տեղավորվել իր գրասեղանի մոտ, երբ դուռը թակեցին.

— Կարելի է:

Շտապ, անհետաձգելի գործեր ուներ Միրզոյանը, բայց նա լսեց այցելուներին: Տղան լուռ ու գլխիկոր կանգնած էր, իսկ հայրը քաշվելով ասաց.

— Տղաս լավ դաշնամուր է նվագում... ասում են կոմպոզիտոր է...

Միրզոյանը ժպտաց: Նա այդպես էլ գիտեր: Սովորական հարցով եկած սովորական այցելու, որին թվում է, թե իր տղան տաղանդ է:

— Ի՞նչ անենք, Լևոն,— դիմեց նա կոմպոզիտոր Լևոն Աստվածատրյանին, որը նույնպես առանձնասենյակում էր:

— Գուցե լսե՞նք,— թերահավատությամբ ասաց վերջինս:

— Լսե՛նք,— այլ միջոց չգտնելով համաձայնեց Միրզոյանը: Հետո դիմելով երեխային՝ հարցրեց.

— Անունդ ի՞նչ է, բալիկ...

— Զոհրաբ,— պատասխանեց տղան մեղմ ձայնով:

Եվ ահա նրանք մոտենում են դաշնամուրին: Հայրը տղային նստեցնում է աթոռակին:

— Ի՞նչ նվագեմ,— հարցնում է տղան:

— Ի՞նչ ուզում ես՝ նվագիր,— ասում են ներկաները:

— Ես կնվագեմ իմ ստեղծագործություններից... դաշնամուրային կոնցերտը...

Միրզոյանը քմծիծաղ տվեց ու նայեց մյուսներին: Մյուսները նույնպես ժպտացին բազմանշանակ: Պարզ չէ՞ր միթե, թե ինչ պիտի նվագեր այդ թուլակազմ ակնոցավոր տղան: Գոնե փոքր ձևի մի գործ ասեր՝ երգ, պիեսիկ... թե չէ՝ դաշնամուրային կոնցերտ, որին նույնիսկ տաղանդավոր մարդիկ հասնում են երկար տարիների ստեղծագործական մեծ փորձից հետո: Շատ կոմպոզիտորներ այդպես էլ իրենց ողջ ստեղծագործական կյանքում սիրտ չեն անում կոնցերտ գրել: Իսկ այս փոքրիկը, որը երևի նոտաներ էլ չգիտի, ուզում է նվագել իր սեփական... դաշնամուրային կոնցերտը:

— Լավ, նվագիր, ճուտիկ, ի՛նչ ուզում ես՝ նվագիր:

Եվ ահա փոքրիկ ու նուրբ մատները սահում են ստեղների վրայով և տեղի է ունենում հրաշքը: Բոլոր ներկա եղողները հմայված լսում են անծանոթ դաշնամուրային կոնցերտը, որը կարծես թե Մենդելսոնի ստեղծագործությունը լինի: Ոչ միայն մեղեդայնությամբ, այլև կատարման բարձր տեխնիկայով, ձևի խորը զգացողությամբ, փոքրիկ տղայի դաշնամուրային կոնցերտը զարմացնում է բոլորին: Երբ նա վերջացնում է առաջին մասը, բոլորը վրա են հասնում, գրկում ու համբուրում են տղային, իսկ փոքրիկ Զոհրաբը ակնոցների միջից նայում է կարծես թե հեռուները և չի տեսնում իր խոսակցին:

— Զոհրաբ, տղա՛ս, – ուղիղ ինձ նայիր, ինչո՞ւ ես աչքերդ փախցնում,—տղային պինդ գրկած հարցնում է Միրզոյանը:

Այստեղ բոլորը նկատում են, որ տղայի հայրը լուռ լաց է լինում: Արցունքի կաթիլները գլորվում են նրա այտերից ցած:

Զոհրաբը չէր տեսնում:

— Ուզո՞ւմ ես էլի նվագել,— լռությունը խախտում է Աստվածատրյանը:



— Ուզում եմ...

Եվ Զոհրաբը նորից սկսում է նվագել դաշնամուրային կոնցերտից կտորներ, «Ռոնդո-կապրիչիոզո», «Տարանտելլա», «Դեղձանիկ»: Եվ բոլորն էլ իր ստեղծագործությունները, բոլորն էլ գեղեցիկ ու գրավիչ մեղեդիներ: Նվագում է փոքրիկ երաժիշտը, ու ներկաներն զգում են, որ ծնունդ է առնում մի նոր աստղ հայ երաժշտության երկնակամարում:

* * *

Բայց որտեղի՞ց լույս ընկավ տաղանդավոր պատանին: Չէ՞ որ ինչքան էլ տաղանդավոր, նման գործեր ստեղծելու համար հարկավոր է նաև կրթություն...

Զոհրաբ Փարեմուզյանը Թբիլիսիից է և վերջերս է միայն ընտանիքով փոխադրվել Երևան, ուր ապրում են նրա պապիկն ու տատիկը:

ԶՈՀՐԱԲ ՓԱՐԵՄՈՒԶՅԱՆԸ ՆՎԱԳԵԼԻՍ

Երաժշտական ընդունակություններ նա ցուցաբերեց շատ վաղ հասակում, բայց միայն Թբիլիսիի պիոներների պալատում սովորելիս, բոլորն զգացին, որ նա օժտված է արտակարգ շնորհքով: Պիոներների պալատի դաշնամուրային խմբակի ղեկավար Թամարա Գեգուչաձեն անմիջապես զգաց, որ գործ ունի մեծ տաղանդի հետ և իր ողջ ուշադրությունը կենտրոնացրեց փոքրիկ Զոհրաբի վրա: Ամեն ինչ անում էր ուսուցչուհին, որպեսզի փոքրիկ երաժիշտը տիրապետի դաշնամուրային կատարման բարձր արվեստին: Նրա հոգատարությունն անսովոր էր ու չտեսնված սրտառուչ, և, երբ պիոներների պալատից Զոհրաբին փոխադրեցին Թբիլիսիի № 1 երաժշտական դպրոցը, Գեգուչաձեն խնդրեց, որ դպրոցում ևս ինքը պարապի տղայի հետ:

Եվ ահա Թբիլիսիի փողոցներում հայտարարություններ երևացին այն մասին, որ Զոհրաբ Փարեմուզյանը անհատական համերգ է տալու... Ռուսթավելու անվան թատրոնի շենքում: Այն ժամանակ Զոհրաբը դեռ տասը տարեկան էր: Թատրոնի լեփ-լեցուն դահլիճը ծափերով ու օվացիայով էր գնահատում յուրաքանչյուր համար: Իսկ համարները բարդ էին շատ: Փոքրիկ երաժիշտը մեծ հաջողությամբ էր կատարում Մենդելսոնի, Հայդնի կոնցերտները, Լիստի երկրորդ ռապսոդիան, Բախի պրելյուդները, Մոցարտի, Չայկովսկու և այլ կոմպոզիտորների դաշնամուրային ստեղծագործությունները և, իհարկե, նաև իր սեփական փոքրիկ ստեղծագործությունները:

Դահլիճը ծափահարում էր դեռևս երեխա երաժշտին, իսկ կուլիսներում կանգնած Թամարա Գեգուչաձեն տղայի ծնողների հետ ուրախությունից արտասվում էր, և դժվար է ասել, թե նրանցից ով էր ավելի շատ ուրախանում:

Հետո Զոհրաբին ուղարկեցին Օդեսա, ուր նրա աչքերը վիրահատեցին: Օրերս նրա աչքերն սկսեցին տեսնել, ճիշտ է, դեռևս շատ թույլ, բայց բժիշկները հույս են տալիս, որ նա ավելի լավ կտեսնի:

Այժմ Զոհրաբ Փարեմուզյանը Երևանում է, ուր նա կշարունակի իր ուսումը, և մենք շուտով առիթ կունենանք լսելու տաղանդավոր երաժշտին, որի պարանոցին դեռ կարմիր է տալիս պիոներական ալ փողկապը:

*Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

# ՃՈՒՏԻԿԸ

Երաժշտ. ԶԱՀՐԱԲ

Խոսք՝ ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆՈՒ

ՓԱՐՍԱՄՈՒՋՅԱՆԻ




























Փոքրիկ ճուտիկ,
Աղվամազիկ,
Մի փախենա,
Արագ վազիր:

Ձու՛-ձու՛, ձու՛-ձու՛,
Արի-արի,
Ո՛ւր ես մենակ
Կանգնել քարին:

Թե վերք ստանաս,
Կանչեմ տատին,
Որ քո վերքը
Նա փաթաթի:

Ձու՛-ձու՛ է, ձու՛-ձու՛,
Արի, արի,
Իմ տատիկը
Շատ է բարի:



ՀՈՎՀԱՆՆԵՍ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Ամեն ինչ սկսվեց այն օրվանից, երբ ես բերեցի առաջին գիրքը։ Իհարկե, այստեղ արտակարգ ոչինչ էլ չկա, որովհետև ես համարյա ամեն օր նոր գիրք եմ առնում։ Սակայն այդ գիրքը... Այժմ էլ դրված է գրապահարանում մյուս գրքերի կողքին, սակայն նրան նայելիս, ինձ թվում է, թե նա արհամարհանքով նայում է ինձ և նույնիսկ երբեմն էլ աչքով անում։ Այսօր ես վերջապես ի վիճակի չեղա տանելու այդ խայտառակությունը։ Գիրքը դուրս հանեցի իր տեղից և... դրեցի գրքերի հետևը, որպեսզի այլևս չտեսնեմ նրա երեսը։ Բայց միևնույն է, ես մինչև կյանքիս վերջը կհիշեմ այդ գիրքը, ինչպես հիմա եմ հիշում...

Հինգերորդ դասարանում էի սովորում։ Թե ինչպես էի սովորում, չեմ թաքցնի, կասեմ ճիշտը, ես սկզբում չէի սիրում մաթեմատիկան, քիմիան, ասում եմ «չէի սիրում», որովհետև ամբողջ ուշադրությունս ուղղված էր նկարչության վրա։ Ամբողջ էությամբ նկարչություն էի։ Ես չէի պատկերացնում, որ բացի նկարչությունից, ուրիշ կարևոր առարկա էլ կա։ Չէի պատկերացնում, սակայն...

Երբ նկարչության ուսուցիչը նայելով բոլորի աշխատանքները, վերջապես հասավ ինձ, ես անհամբերությունից շնչահեղձ եղա. ի՞նչ կասի. կհավանի՞, թպրտում էր սիրտս, իսկ դա քիչ բան չէր։ Հապա պատկերացրեք, երեսուն աշակերտ նայում են ինձ, և բոլորն էլ համոզված են, որ ես նորից ինչ-որ բան եմ ասելու։

— Ապրե՛ս, Աշոտ, — իսկ թե հետո ինչ ասաց, ես այլևս չեմ հիշում, հպարտությունից ուռել էի և միայն ամոթխած ժպտում էի, ցուցադրելով ըսպիտակ ատամներս։ Քիչ անց օրագրիս մեջ բազմաթիվ «երկուսների» ու «երեքների» կողքին հայտընվեց թվանշանների արքան՝ «հինգը»։

Մեր նկարչության ուսուցիչը միշտ էլ բոլորի ներկայությամբ ասում էր, որ ես լավ նկարիչ կդառնամ։ Իսկ ես չէի զարմանում, որովհետև ինքըս էլ իմ մասին այդպիսի կարծիք ունեի։ Վերջանում էր նկարչության դասը, վերջանում էր և իմ ուրախությունը, ու նորից դասարանը աչքիս առաջ մթնում էր, նորից սկսում էի հուզվել, բայց այս անգամ արդեն՝ դասս չիմանալուց...

...Սկզբում ամեն ինչ լավ էր գնում։ Նույնիսկ ինձ նշանակեցին դասարանական պատի թերթի նկարիչ։ Ընկերներիս կարծիքն իմ մասին աստիճանաբար դեպի լավն էր գնում, և մի գեղեցիկ օր Հայկը, Սուրիկը և Գոհարը ինձ առաջարկեցին իրենց օգնությունը։ Ես սկսեցի պարապել այն առարկաները, որոնք ինձ այնքան վիշտ էին պատճառել։

Օրագիրս հետզհետե կերպարանափոխվում էր. «երկուսները» նահանջում էին՝ իրենց տեղը զիջելով նախ «երեքներին», ապա «չորսերին» և նույնիսկ «հինգերին»։ Դասարանը այժմ աչքիս մի գեղեցիկ, խորհրդավոր աշխարհ էր թվում, որտեղ անցնում էինք արդեն ինձ հասկանալի ու հետաքրքիր առարկաներ։ Հիշում եք, չէ՞, որ ասացի դա սկզբում էր, իսկ հետո...

Այդ օրը նկարչության ժամին ուսուցիչն հայտարարեց, որ շուտով ինքնուրույն աշխատանքների ցուցահանդես է լինելու և մեզանից յուրաքանչյուրը պետք է իր աշխատանքները ներկայացնի։ Ցուցահանդեսը բացվելու էր հաջորդ շաբաթ. դա նշանակում է ես ամբողջ հինգ օր ունեմ իմ տրամադրության տակ։ Երեկոյան ես ամեն ինչ թողած մտածում էի, գծում, ջնջում, դարձյալ ջնջում, սակայն չէր ստացվում այն, ինչ ես էի ցանկանում։ Հոգնած ամեն ինչից, ես մի կողմ նետեցի մատիտը և վերցնելով մի գիրք, սկսեցի կարդալ։ Երևի բավականին ժամանակ էր անցել, որովհետև երբ նայեցի դուրս, այնտեղ իր լիակատար իրավունքների մեջ էր մտել գիշերը։ Ես արդեն հուսահատված մի կողմ դրեցի գիրքը, զայրացած նայեցի նկարչական տետրին և այն է ցանկանում էի շրջվել, երբ հանկարծ մի նկար գրավեց ուշադրությունս։ Ինչպե՞ս չեմ նկատել, զարմացա ես։ Կրկին նստեցի տեղս և վերցնելով գիրքը, ուշադիր նայեցի նկարին։ Ա՜յ թե կզարմանան բոլորը, ոչ ոք այդպիսի նկար չի կարող նկարել, ինքնագոհ մտածեցի ես, երբ արդեն արտանկարել էի։

Հինգ օրն անցավ ինչպես հինգ շաբաթ։ Ես ամեն երեկո բացում էի ինձ համար սիրելի դարձած այդ գիրքը, երկար նայում նկարին և կրկին ու

կրկին ստուգում, թե արդյոք պակաս որևէ բան չի՞ մնացել։

Եկավ ցուցահանդեսի օրը, դպրոց էին եկել ծնողներ, ուրիշ դպրոցի աշակերտներ։ Ես հպարտությամբ քայլում էի միջանցքում, որտեղ փակցրված էին նկարները և հետաքրքրությամբ նայում էի նրանց դեմքերին, ովքեր անցնում էին իմ աշխատանքի մոտով։ Եվ իսկապես, բոլորն էլ ծի-



ծաղում էին, գովում նկարչին, իսկ եթե նրանց մեջ ծանոթ էր լինում, ապա իսկույն շրջվում էր իմ կողմը և գովասանական խոսքեր ասում։ Ես, իհարկե, ցույց չէի տալիս, թե դիտմամբ եմ այդտեղ կանգնել, ո՛չ, դանդաղ քայլում էի մտքումս հաշվելով քայլերս, ապա կրկին վերադառնում։

— Սուրեն, սա ո՞ւմ աշխատանքն է, — հանկարծ լսեցի Լենայի ձայնը։

Ես միշտ էլ այդ աղջկան չեմ սիրել, հենց առաջին օրը, որ տեսա, իսկույն զգացի, որ շատ ինքնավստահ աղջիկ է։ Սիրում է ուրիշների գործերի մեջ խառնվել, քննադատել։ Ահա խնդրեմ, հիմա էլ երևի սրա պատճառով մի անախորժություն լինի։

— Մի՞թե գլխի չընկար, Աշոտինն է, — նրան մոտենալով ասաց Սուրենը. — լավն է, չէ՞։ Հապա նայիր, որքա՜ն ծիծաղելի դեմք է ընդունել այս մոտոցիկլիստը։ Միլիցիոների հայտնվելուց այնպես է շփոթվել, որ մոռացել է մոտոցիկլի անիվը վերցնել հավի վզի վրայից։

— Այո, շատ ծիծաղելի է, իսկ քեզ չի՞ թվում, որ դա ինչ-որ ծանոթ նկար է, — կրկին հարցրեց Լենան։

— Ծանո՞թ, — զարմացավ Սուրենը։

Ես ամոթից կուչ էի եկել միջանցքի մի անկյունում և սարսափով նայում էի այնտեղ, որտեղ գնալով հավաքվում էին մեր հյուրերը։ Հանկարծ ինձ այնպես թվաց, որ անիվների տակ ոչ թե հավ է ընկել, այլ ես եմ, այո՛, այո՛, ես։ Նույնիսկ ձեռքս տարա դեպի վիզս և սկսեցի շփել, իսկ վիզըս իսկապես ցավում էր... լարումից։ Այդտեղ մնալ այլևս ուժերիցս վեր էր, ես գաղտագողի դուրս սողոսկեցի դպրոցից և հենց առջևս տեսա դեռ երեկ իմ ձեռքով գրած հայտարարությունը. «Ինքնուրույն աշխատանքների ցուցահանդես»։

Չգիտեմ, թե դուք իմ փոխարեն ինչպես կվարվեիք, բայց ես ամբողջ գիշեր չքնեցի, ինձ թվում էր, որ ամբողջ դասարանը ծիծաղում է ինձ վրա, իսկ ես ընկել էի մոտոցիկլի տակ և այնպիսի դեմք էի ընդունել, ինչպես իմ արտանկարած հավը։ Առավոտյան սարսափելի դրության մեջ էի։ Ոտքերս մի կերպ քարշ տալով հասա դպրոցի շենքին և գլխահակ մտա ներս։ Առաջին բանը, որ տեսա, դա ցուցահանդեսն էր. ես հայացքով փնտրեցի նկարը, սակայն... նկարը չկար, դրա փոխարեն մի դատարկ քառակուսի էր երևում պատի վրա։ Երևի պատռել են, մտածեցի ես և մտա դասարան։ Հանկարծ բոլորը լռեցին և դեմքերը շրջեցին ինձանից։ Ես դժվարությամբ մոտեցա նստարանին և այնտեղ տեսա իմ դժբախտ հավին, նա այժմ իմ սեղանի վրա էր և աղերսական հայացքով նայում էր ինձ։

Դե էլ ինչ ասեմ։ Իսկ թե հետո ինչ եղավ, կարծում եմ գուշակում եք։ Իհարկե, ինձ նկարչի պարտականություններից չազատեցին, բայց այդ դեպքը ինձ համար մի դաս եղավ, որ ուրիշի աշխատանքները չարտանկարեմ։

Ամեն անգամ, երբ նայում եմ գրքին, հիշում եմ այս դեպքը, և գիտե՞ք, նույնիսկ ուրախանում եմ։ Զարմանո՞ւմ եք, իզուր, իսկ եթե ուրիշի աշխատանքը գողանալը դառնար սովորությո՞ւն, ի՞նչ կանեի այն ժամանակ։

Այժմ ես լավ նկարիչ եմ, հաճախ եմ նկարներս դիտել ցուցահանդեսում, սակայն երբեք չեմ թաքնվել մարդկանցից այնպես, ինչպես այն երեկոն. իսկ ինչո՞ւ պետք է թաքնվեմ, չէ՞ որ դրանք իմ քրտնաջան աշխատանքի պտուղներն են։ Իսկ այն, ինչ համառ աշխատանքով է ձեռք բերված, երբեք կարմրելու առիթ չի տալիս։






## ՀԱՐԳԵԼԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

«Պիոների» այս տարվա 4-րդ համարում տպագրված իմ նամակի կապակցությամբ ես ստացա շատ ու շատ նամակներ: Սկզբում որոշել էի բոլորին էլ առանձին-առանձին պատասխանել, բայց երբ նամակների թիվը հետզհետե բազմացավ, ստիպվեցա պատասխանել նրանց ձեր ամսագրի միջոցով:

### ԻՄ ՇԱՏ ՍԻՐԵԼԻ ՀԵՌԱՎՈՐ ԸՆԿԵՐՆԵՐ

*Ես շատ զգացված եմ ձեր՝ իմ հանդեպ ցույց տված հետաքրքրությունից ու հարգանքից: Շատ էի ուզում բոլորիդ էլ պատասխանել առանձին, բայց ուղղակի անկարելի է: Դրա համար որոշեցի բոլորիդ համար ուղարկել մի բաց նամակ:*

*Սիրելի բարեկամներ, ես արդեն մի տարի է, որ կոմերիտական եմ: Այս տարի վերջացուցի ութամյան գերազանցով: Այժմ ես ուզում եմ սովորել շինարարական տեխնիկումում, իսկ հետո՝ ինժեներա-շինարարական ինստիտուտում:*

*Ջերմագին բարևներով՝ ձեր հեռավոր ընկեր*
*ՄԱՍԼԵՆԱ ՇԻՐԻՆՅԱՆ*

*ՍՈՖԻԱ, ԲՈՒԼՂԱՐԻԱ*

## ԲԱՐԻ ԺԱՄԱՆԱԿԱՐՀ ԴԵՊԻ ՀԱՅՐԵՆԻՔ

Տիգրանի հետ ես ծանոթացա մեկ տարի առաջ՝ Երևանում: Եկել էր հեռավոր Փարիզից՝ իր ծնողների ու տատիկի հետ միասին: Եկել էր, որ տեսնի մեծերի կողմից այնքան փառաբանված Հայաստան երկիրը, իր շուրջն ամենուրեք լսի քաղցրալուր հայրենի բարբառը: Չէ՞ որ դա այնքան հազվագյուտ, ուղղակի անհնար բան է այն մեծ ու գեղեցիկ քաղաքում, ուր ապրում է նա:

— Հայ տղաքը կուզեմ տեսնել,—պնդում էր նա համառ կերպով:

Ու Տիգրանին տարան Ծաղկաձոր. ինչ գեղեցի՜կ է բնությունը, ի՜նչ տեսարաններ զըմայլելի: Ամբողջ կյանքում նա չի մոռանա այն հանդիպումնե՜րը, որ ունեցավ պիոներական ճամբարում հանգստացող մանուկների հետ, հայպաշխույժ երգն ու պա՜րը, արտասանություննե՜րը, որոնց ինքն էլ մասնակցեց իր անվարժ, սակայն նվիրական մայրենի լեզվով...

Երկրորդ անգամ Տիգրանին հանդիպեցի այս տարի, երբ մի առիթով Փարիզ էի գնացել: Տիգրանը մեծացել, վեց տարեկան է դարձել, ավելի վարժ է խոսում հայերեն, նոր ոտանա-



Բարի ճանապարհ
ՏԻԳՐԱՆ ՉՐԲԱՇՅԱՆ

վորներ է սովորել Թումանյանից, Շիրազից, Սևակից։

Իր և քույրերի ննջասենյակի պատին Հայաստանի մեծադիր քարտեզն է, իսկ դռանը փակցըված է հայկական այբուբենը, որ ճանաչեն հայրենի երկիրը, նրա գիրը։ Չէ՞ որ այստեղ հայկական դպրոցներ չկան և Տիգրանն ու իր քույրերը՝ Անուշն ու Շուշանը, մայրենի լեզուն պիտի սովորեն տատիկի և ծնողների օգնությամբ, իրենց սեփական ջանքերով։ Շատ դժվար գործ է այս գեղեցիկ, բայց օտար քաղաքում հավատարիմ մնալ պապենական ավանդներին, հայ մեծանալ։ Իր հայ բարեկամների քանի-քանի երեխաներ ո՛չ հայերեն գիտեն, ո՛չ էլ գաղափար ունեն հայրենիքի մասին…

— Դուք միշտ հա՞յ նք եղած.— հարցնում է նա ինձ միանգամայն լուրջ։

Ի՞նչ պատասխանես սրտառուչ թվացող այդ հարցին, բայց ես հասկանում եմ, շատ է մտահոգել նրան իր ծնողների խոսակցությունը հայ մեծանալու մասին։

— Այո, իհարկե,—պատասխանում եմ ես ինքնաբերաբար,—նույնն էլ քեզ եմ խորհուրդ տալիս լինել։

— Պիտի ջանամ, պիտի ջանամ,—ասում է նա մանկական լրջությամբ և ավելացնում.—Այս ամառ է՞լ մանուկները Ծաղկաձորում պիտի հանգստանան. ի՜նչ աղվոր տեղ է, որքա՜ն կուզեի քանի մը շաբաթ այնտեղ ապրել, սարը բարձրանալ, ծաղիկներ քաղել, խաղալ ու երգել։

Սիրտս ալեկոծվում է. մտածում եմ քանի-քանի երեխաներ սփյուռքում համակված են այս սրբազան ցանկությամբ։

Վերջին օրը Փարիզում։ Հոր հետ միասին Բուրժե օդանավակայան է եկել Տիգրանը ինձ ճամփու դնելու։ Հրաժեշտի պահին նա ինձ հանձնում է մի ծրար, որի բովանդակությանը ծանոթանում եմ միայն օդում, երբ ինքնաթիռը թռչում էր դեպի Մոսկվա։ Ծրարում այս նըկարն էր, որ նա պատրաստել էր հատկապես ինձ համար, բարի ճանապարհ մաղթելով դեպի իր սիրած հայրենիքը, որի քաղաքացին են ուզում դառնալ իր ծնողները և ինքը՝ Տիգրանը։

Հավատում եմ, մի օր Տիգրանն իր ծնողների հետ կբռնի հայրենի երկրի ճամփան։

*ՎԱՐԱԶԴԱՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*



**ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ**

# ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ՍՏՎԵՐՆԵՐ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

## ՄԵՆՔ ՈՒ ՎԱՐՅՈՒՍԻ ՌՈՒԲԵՆԸ

*Արդեն ասել եմ, որ վիճում էինք կոնֆետի թղթերի համար։ Բացի դրանից, կարդում էինք ձեռքներս ընկած գրքերը՝ կռիվների, գանձերի, ավազակների ու ծովահենների մասին։ Վեգ էինք խաղում, հոլ էինք գցում, Զանգվի ձորում լողանում էինք, ճեղապարսատիկով հալածում խեղճ ու կրակ ծտերին ու մեկ-մեկ էլ (իհարկե, պատահաբար) քարով կոտրում Թաղի լուսամուտների ապակիները։ Բայց ամենից շատ սիրում էինք*

Սկիզբը՝ նախորդ համարում։

կանգնել նեղլիկ մայթերին և դիտել պատկոմների շարքը։ Նրանք լայնեզր գլխարկներ ունեին, կարմիր փողկապներ, կարճ, կանաչավուն անդրավարտիքներ, հղկած, հրաշալի մարգածողեր, իսկ գոտիներից կախված էին ոսկրե սուլիչները։ Թե իմանաք ի՜նչ գեղեցիկ էին քայլում նրանք։ Մենք նրանց շատ էինք տեսել Անգլիական այգում, սպորտային խաղերի ու մրցումների ժամանակ, բարեկամացել էինք մեկ-երկուսի հետ ու սովորել մի երգ, որ ամեն անգամ պատկոմների շարքը տեսնելիս, գոռում էինք փողոցով մեկ.

Սկաուտ, սկաուտ սեերես,
Կատուն լիզի քո երես:
Պատանի կոմունա՞ր,
Դու մեր երկրի՛ շինարա՞ր...

Պատկոմներին Վարդյանն էլ էր սիրում, ամեն անգամ, նրանց ռիթմիկ ոտնաձայնը լսելիս, դուրս էր գալիս իր փոքրիկ արհեստանոցից ու կապույտ աչքերի մեջ ժպիտը թաքցրած՝ լուռ դիտում նրանց շարքը։

Վարդյանը երկու որդի ուներ, դրանցից մեկն ամուսնացած էր և աշխատում էր մեր քաղաքի մեխանիկական արհեստանոցում։ Նա մեզ համար հետաքրքիր մարդ էր, քանի որ միշտ մրոտ էր ու ձեռքերը կոշտացած։ Բայց մենք նրան քիչ էինք ճանաչում։ Դրա փոխարեն կրտսեր որդին, որ մեզ հասակակից էր ու սովորում էր մեր դպրոցի հինգերորդ «բ» դասարանում, թիրախ էր իմ ու Կարոյի հալածանքների համար։ Նրա անունը Ռուբեն էր։ Կարոն, որ ամեն ինչ ծռմռելու զարմանալի շնորհք ուներ, նրան ասում էր. «Ռուբեն— մռավ տրուբեն»։ Ռուբենն, իհարկե, դա չէր կարող ներել, մի հատ «հասցնում» էր Կարոյին։ Ես իսկույն անցնում էի Կարոյի կողմը։ Ռուբենը մի անգամ էլ ինձ էր «հասցնում»։ Բայց դրանով էլ նրա հարձակումը վերջանում էր։ Մենք երկուսով հաղթում էինք նրան ու հալածում մինչև Վարդյանի տունը։

Բայց Ռուբենն, ըստ երևույթին, լավ տղա էր։ Նա երբեք լաց չէր լինում ու մեծերին չէր գանգատվում մեզանից։ Դրա համար էլ մենք սեպ-սեպ մտերմանում էինք նրա հետ, դպրոցում ուտում էինք նրա բերած նախաճաշը կամ մեր թռցրած ծիրաններից մի քանիսը տալիս նրան։ Մինչև մի գեղեցիկ օր Կարոն չէր համբերում, գոռում էր.

— Է՜յ, Ռուբեն— մռավ տրուբեն...

Եվ ամեն ինչ սկսվում էր նորից. Ռուբենը մի հատ «հասցնում» էր Կարոյին, հետո ինձ էր «հասցնում», հետո մենք էինք «հասցնում» նրան ու հալածում մինչև տուն։

Աշնանամուտին Ռուբենը տարբերվում էր մեզնից իր հագուստով։ Ես հագնում էի ինձանից երեք տարով մեծ քրոջս՝ Զարիկի հնամաշ վերարկուն, գլխիս դնում էի հորս երբեմնի գդակը, կարճ, ներքև իջնող հովարով։ Կարոն էլ մոտավորապես ինձ նման էր՝ հագնվում, միայն նրա գդակի հովարը, ընդհակառակը, լայն էր ու դեպի վեր թեքված։ Մինչդեռ Ռուբենը հագնում էր բամբակած զինվորական կիսամուշտակ, որին նա հպարտությամբ ֆրենչ էր ասում, իսկ գլխին դնում էր իսկական զինվորական սրածայր գլխարկ, որի վրա դեռ երևում էր կարմիր աստղի տեղը։ Ես ու Կարոն նախանձում էինք Ռուբենին այդ ֆրենչի ու հատկապես գլխարկի համար և աշնան առաջին օրերին մեր ու Ռուբենի փոխադարձ գզվռտոցն ավելի հաճախակի էր դառնում։



ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

## ԼՐԱԳԻՐԸ

Ամեն ինչ սկսվեց նրանից, որ ես ու Զարիկը տանը մենակ մնացինք։ Պարզ է, ես չար էի, իսկ Զարիկն աշխատում էր դաստիարակել ինձ։ Թեյ էինք խմում, ու, քանի որ հայրիկն ու մայրիկը տանը չէին, ես իրար հետևից հինգ բաժակ խմեցի։ Մանրած շաքարի կտորը գցում էի բերանս, ծպպացնելով ծծում ու թեյի ափսեից ֆռռացնելով ներս քաշում տաք թեյը։ Զարիկը բաժակից էր խմում ու, այնպես էր նայում ինձ, կարծես կենդանաբանական այգում անծանոթ գազան էր տեսել։

— Ծը՛պ, ֆը՜ռռ, ծը՛պ, ֆը՜ռռ, ի՜նչ ես աչքերդ չռել։

— Մի՛ ֆռռացնի։

— Քեզ ինչ։

— Քաղաքավարի խմիր։

— Պա՜հ, սրան տեսեք։

— Դեռ չեմ ասում, որ արդեն հինգ բաժակ խմեցիր։

— Քո գործը չի։

— Մայրիկն ասում էր...

Ես, ճիշտն ասած, այլևս թեև խմելու ախորժակ չունեի, բայց այդ «քաղաքավարի» Զարիկի չգրումանցա նավթավառին՝ վեցերորդ բաժակը լցնելու։

— Զհամարձակվե՛ս, —ասաց Զարիկը։

— Պա՞հ։

— Զհամարձակվե՛ս, ասում եմ։

Զարիկը փորձեց արգելել, բայց ես նրան հրեցի։ Բաժակն ու ափսեն ձեռքիցս ընկան ու, իհարկե, փշրվեցին, իսկ Զարիկը նու-նու գնաց, սայթաքեց ու...

Մեր տունը թաղի բոլոր տների նման էր, դույլագործ արհեստավորի տուն։ Պատուհանի տակ դրված էր վարպետ Վարդուսի պատրաստած ճաշասեղանը՝ չարխարաշ ոտքերով, անկյունում նույնպես վարպետ Վարդուսի արհեստանոցից դուրս եկած թախտը, որի ոտքերն, իհարկե, չարխարաշ չէին։ Մենք երկու երկաթե մահճակալ ունեինք. մեկը՝ հայրիկի, մյուսը մայրիկի համար։ Զարիկը թախտին էր քնում, իսկ ես՝ հատակին։ Մեր տանը ճկած փայտից պատրաստված վեց աթոռ կար, պատին սև շրջանակով կպցրած էր պապիս՝ Միլիտոս Մելիք-Գրիգորյանցի նկարը։ Պապս, որ արդեն չկար, նույնպես դույլագործ էր եղել, բայց չգիտեմ ինչու հայրս պարծենում էր նրա ու մեր ազգանունով։

Բայց նա ավելի շատ ուրիշ բանով էր պարծենում։ Մեր տանը մի այնպիսի առարկա կար, որ թաղի ոչ մի ուրիշ տանը չէիր գտնի։ Դա դրված էր բարձերով ծածկված երկու մահճակալների արանքում։ Մայրս այդ առարկան անվանում էր «բոյահայելի» և առիթը չէր փախցնում հարևանուհիներին հպարտությամբ հրավիրելու.

— Աղջի, Երան, նոր դեյրա ես կարել, արի մեր բոյահայելու մեջ մտիկ արա։

Դա իսկապես հրաշալի հայելի էր. սև, սաթի նման պսպղուն շրջանակով ու նույնպիսի պատվանդան-աթոռով, որ երեք ոտք ուներ՝ երկուսն առջևում, մեկը հետևում. երեքն էլ չարխարաշ՝ ի՜նչ չարխարաշ...

... Իմ ձեռքից բաժակն ու ափսեն ընկան, փշրվեցին, իսկ Զարիկը նու-նու գնաց, սայթաքեց ու կպավ հայելուն։ Ես նախ նրա ճիչը լսեցի, ապա մի ուժեղ շրխկոց։ Աչքերիս առաջ պսպղացին կոտրված հայելու կտորները, ու ես դուրս փախա սենյակից...

Հորս համար պարծենալու բան միայն ազգանունը մնաց։ Զարիկն ինձ չմատնեց, ընդհակառակը, ասաց, թե իբր ինքն է պատահաբար սայթա-



բեյ հին կարպետի վրա, կպել ինձ, վար գցել ձեռքիս բաժակն ու ափսեն, հետո ընկնելիս կպել է հայելուն։ Հայրս հավատաց, նա առհասարակ այնքան մեղմ մարդ էր, որ ոչ ոք նրան բարկացած չէր տեսել։ Բայց մայրս, թվում է, գլխի ընկավ, հավասարապես անիծեց երկուսիս էլ ու մի անգամ մատնոցով կտտացրեց գլխիս։ Այդքանով վերջացավ իմ պատիժը։ Հայրս «բոյահայելուց» մնացած ամենամեծ կտորը մեխերով ամրացրեց հայելու հետևի տախտակին՝ նախօրոք պոկելով տախտակին կպած հին լրագիրը։ Նա այդ լրագիրը ճմլեց ու գցեց սենյակի անկյունը, որտեղից ես, չգիտեմ ինչու, վերցրի ու թաքուն կոխեցի ծոցս։ Երեկոյան դեմ եկեղեցու բակում, որտեղ առհասարակ միշտ ամայի էր լինում, ես ու Կարոն ոտքներս կախել էինք ցամաքած առվի մեջ ու կողք-կողքի նստած կարդում էինք տարիներ առաջ տպագրված լրագիրը։

— «Պատահար ստանիցայում»,— կարդում էր Կարոն,— «Մի քանի օր առաջ Կուբանի Բելարեչենսկ ստանիցայում հայտնվեց գնչուների մի խումբ։ Խմբի մեջ կար մի երիտասարդ ջութակահար, մի պարող աղջիկ, մի հաղթանդամ մարդ՝ որ արջ էր պարեցնում և երաժիշտ ամուսիններ՝ երեքամյա տղայի հետ։ Մի երեկո, անհայտ պատճառով, վեճ ծագեց գնչուների մեջ, որի ժամանակ երիտասարդ ամուսինը դաշույնով սպանեց կնոջը և անհայտացավ։ Ոստիկանությունը ձերբակալել է գնչուներին, մարդասպանը չի հայտնաբերված»։

Լրագրի հոդվածներն ու թղթակցությունները կիսով չափ անհասկանալի էին մեզ։ Այդտեղ նկարված էր մի հսկայական զանգ և, չգիտես ինչու, տակը խոշոր տառերով գրված էր. «Գնեցեք պ. Շուստովի կոնյակը։ Կոնյակը խմում են Փարիզում, Լոնդոնում, Պետերբուրգում, Վարշավայում»։ Հետո մարդու գլխով մի աքաղաղի նկար կար, տակը գրված «Պ. Դ. Նախագահը»։ Երկար—երկար հոդվածներ կային՝ խոշոր վերնագրերով, իսկ ամենաներքևում, սև շրջանակի մեջ. «Վշտաբեկ տ. Եղիսաբեթ Փարվանյանը հայտնում է բարեկամներին ու ծանոթներին, որ անմոռանալի ամուսնու՝ Հայկ Գասպարիչ Փարվանյանի, մահվան տարելիցի պատարագը լինելու է ս. Գրիգոր եկեղեցում, շաբաթ, 14 մայիսի ս. թ.»։

Իհարկե մեզ համար հետաքրքիր չէին ո՛չ Հայկ Գասպարիչ Փարվանյանի պատարագը, ո՛չ Շուստովի կոնյակը, ո՛չ էլ երկար հոդվածները։ Ծիծաղելի էր մարդու գլխով աքաղաղը՝ «Պ. Դ. Նախագահը», բայց մենք չէինք հասկանում, թե ինչ է Պ. Դ.-ն և ինչու է նրա նախագահը աքաղաղի նման։ Մինչդեռ գնչուների մասին գրածը հասկանալի էր ու հետաքրքիր։ Մեր քաղաքում էլ գնչուներ կային, ավելի ճիշտ, դրանք գալիս էին ինչ-որ տեղից, թափառում քաղաքի փողոցներում մորս ու հարևանուհիներին մաղ ու սալաներ վաճառում, Ղանթարում թուղթ էին բացում, նայում էին շուրջը խմբված կանանց ձեռքերի ափերին ու բարձրաձայն գուշակում.

«Սիրունս, գնացիր, գնացիր, հասար մի սարի, թե սարն անցար, դեմդ գյուլ-գյուլստան է։ Սպիտակ ձի, սպիտակ ասպապ, թագավորդ ձիու վրա, սիրտը այրվում, կրակվում է... Կունենաս երեք տղա, երեք աղջիկ, ծաղկի փնջիկ։ Երեք քսան ու տաս տարի թագավորիդ հետ կապրես... Վա՜յ, վա՜յ, վա՜յ, էսքան տարի է թուղթ եմ բաց անում, էսպիսի բախտ տեսած չկայի։ Փողն այնքան շատ կլինի, որ դրանով օջախ կանես, տեղս չորանամ, թե սուտ եմ ասում։ Այդքան փողից երկու շահի ինչ է, սիրուն ջան...»

Այսպես գուշակում էին գնչու կանայք, իսկ տղամարդիկ սայլի անիվներ էին սարքում, ձի ու եզ էին պայտում, մինչև որ հանկարծ մի առավոտ չվում, չքանում էին։ Բայց ոչ ես, ո՛չ Կարոն մեր քաղաքում չէինք տեսել ջութակ նվագող գնչու, ու ոչ մի գնչու մեր աչքի առաջ դաշույնով չէր սպանել իր երիտասարդ կնոջը։

Մենք դեռ երկար կարդում էինք հին լրագիրը, մինչև բոլորովին մթնեց, տառերը խառնվեցին, և ամբողջ լրագրից նշմարվում էր միայն կոնյակի զանգն ու մարդու գլուխ ունեցող աքաղաղը՝ Պ. Դ. Նախագահը։ Արդեն ուզում էինք հեռանալ, երբ հանկարծ լսեցինք ծանոթ երգը, որ մեր ամբողջ թաղում միայն Վարյուսի Ռուբենն էր երգում.

Ջի, ձի, ձի,
Բաշը՝ փրփուր,
Աչքերը՝ հուր,
Իսկ հեծյալի
Գոտիկին՝ թուր։

Մեր Դումենկոն,
Խուդյակովը,
Մեր Բուդյոննին,
Կոլպակովը,
Հեծան ձիեր,
Առան թրեր,
Իսկույն ճղեց
Գեներալը,
Էն շան որդի
Խև Պոպովը...
Ջի, ձի, ձի,
Կարմիր հեծյալ...

Ով էր հնարել այս երգը, որտեղից էր սովորել Վարյուսի Ռուբենը, անհայտ էր։ Մենք հեղափո-

խական երգեր շատ էինք լսել, բայց այս մեկը լսել էինք միայն Ռուբենից, իսկ որ երգը հեղափոխական էր, երևում էր Թեկուզ Բուդյոննու անունից. Բուդյոննու նկարը մենք տեսել էինք պատկոմական ամսագրում:

— Է՜յ,— ձայն տվեց Կարոն,— Ռուբեն— մոտավ տրուբեն:

Ռուբենը նրա Թռավ եկեղեցու բակի կարճլիկ ցանկապատից, ըստ երևույթին, Կարոյին մի հատ «հասցնելու», բայց նկատելով, որ ես էլ Կարոյի հետ եմ, միտքը փոխեց.

— Ի՞նչ եք անում:

— Ձի, ձի, ձի,— ձեռ առավ Կարոն:

Ռուբենը չլսելու տվեց.

— Էդ ի՞նչ է:

— Լրագիր:

— Ի՞նչ լրագիր:

— Հին լրագիր,— բացատրեցի ես:

Ռուբենը զարմացավ.

— Վա՜յ, հին լրագիր տեսած չկամ:

Մենք նրա հետ կռվելու տրամադրություն չունեինք, դրա համար էլ վեր կացանք, դուրս եկանք եկեղեցու բակից ու փողոցում, սյունից կախված լապտերի լույսի տակ, նրան ցույց տվեցինք մեր լրագիրը: Նա երկար նայում էր Գ. Դ. Նախագահին, հետո կարդաց, որ «Վշտաբեկ ու Եղիսաբեթ Փարվանյանք...» և այլն: Հետո կարդաց «Պատահար տանիքայում»-ը և նույնպես հետաքրքրվեց.

— Տես է, դաշույնով...

— Դաշույնով,— հաստատեցի ես:

— Բա՜, էսպիսի բաներ...

Ուրիշ անելու բան չկար, ես հպարտությամբ ծալեցի լրագիրն ու խոթեցի գրպանս: Երեքով շարժվեցինք դեպի տուն, ճանապարհին Ռուբենն ասաց.

— Ափսոս հայերին, այդպիսի հայեր չկար:

— Չկար,— տխուր հաստատեցի ես,— խեղճ Չարիկն էլ հանցանքն իր վրա առավ:

— Ես հայրիկիս կասեմ:

— Ի՞նչ:

— Հայերու մասին:

— Ա՞հ:

— Դու մի կարծի, որ նա ուզենա՝ կսարքի:

— Չէ՞ մի:

— Ազնիվ պատկոմական:

Կարոն բամփեց Ռուբենի գլխին:

— Դու ո՞րտեղի պատկոմն ես:

Բայց ինձ Ռուբենի առաջարկը հետաքրքրել էր: Ես էլ իմ հերթին բամփեցի Կարոյի գլխին.

— Սպասիր, Ռուբ, ասում ես, որ ուզենա...

— Ազնիվ պատկոմական:

— Դե իրեն ասա, էլի:

Ռուբենը մեղմացավ.

— Տղերք, կասեմ, նա իմ խնդրածը կանի, նա ինձ մատով կպած չկա ու միշտ իմ խնդրածն անում է: Կասեմ, միայն...

— Ի՞նչ:

— Տղերք, ինձ ընկեր արեք ու մեկ էլ մի՛ ասեք՝ Ռուբեն— մոտավ տրուբեն, լա՞վ:

Ես ու Կարոն համաձայնեցինք: Ռուբենն ուրախացավ.

— Ես հայրիկիս գիտեմ, նա անպայման կսարքի, որ ասեմ՝ կսարքի:

Արդեն տուն էինք հասնում, Ռուբենն ասաց.

— Դերո, Դերո ջան, լրագիրը տուր տանեմ տանը կարդամ:

Նա ինձ այնքան մեծ բան էր խոստացել, որ ես չէի կարող նրա խնդիրը մերժել, լրագիրը գրպանիցս հանեցի.

— Բայց կբերես, հա՞:

— Բա ո՞նց:

Բաժանվեցինք:

(Շարունակելի)





# ՄԱՔՐԱՍԵՐ ՉԱԼՈՆ

ԱՂԱՍԻ ԹՈՒՐԱՋՅԱՆ

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Ո՞վ չէր ճանաչում մեր դպրոցի կատակասեր դռնապան Կարապետ «աղային» և իր մաքրասեր շանը՝ Չալոյին: Կարապետ աղան սիրում էր հավաքել երեխաներին իր շուրջը: Նա մեզ համար առակներ էր պատմում, հետո լեզվով այնպես էր շրխկացնում, որ մի մետր վեր էինք թռչում: Իսկ փոքրիկ Մելանիկը բոլորովին չէր վախենում, երեխաները ետ էին քաշվում, իսկ Մելանիկը օգտվելով առիթից, ավելի մոտենալով Կարապետ աղային, ասում էր իր ամենօրյա խոսքը.

— Իմ հայրիկը քեզանից լավ է շլխկացնում, իսկ դու պապիկ ես:

— Ես ալ քսան տարեկան եմ, աղջիկս:

Երբ ծիծաղում էինք, նա ավելացնում էր.

— Ես ծնվել եմ քառասունվեցին, Հայաստան գալուց ի վեր:

Իսկ ես միշտ նույն հարցն էի տալիս՝ ինչո՞ւ են նրան «աղա» ասում: Ինձ դուր էր գալիս, երբ նա սլացիկ դիրք ընդունելով, շոյելով բեղերը, պատասխանում էր.

— Ալ աղայից ինչո՞վ եմ պակաս:

Գոհարիկն էլ չէր մոռանում հարցնել.

— Կարապետ «աղա», կերակուրների մեջ ամենից շատ ո՞ր ճաշն ես սիրում:

— Ես՝ տոլման մածունով, իսկ Չալոս, — ասում էր շոյելով շան գլուխը, — մոտ ոսկոր, շատ ավոր տտամներ ունի:

— Հապա, Չալո՛, ցույց տուր ատամներդ:

Եվ այդ փոքրիկ, խելացի շնիկը, հնարավորության չափ լայն բացելով բերանը, գլուխը տարուբերում էր: Կարծես ուզում էր այնպես անել, որ բոլորը տեսնեին: Չալոն ոչ միայն իր տիրոջ՝ Կարապետ աղայի հետ էր կապված, այլև ընկերություն էր անում դպրոցի բոլոր երեխաների հետ: Զարմանալի մաքրասեր էր, չէր սիրում թափթփվածություն. թե աչքին մի թղթի կտոր ընկներ կամ ուրիշ առարկա, անմիջապես կվերցներ ու վազելով կտաներ կգցեր աղբարկղը: Երեխաներն այդ գիտեին. բոլորը իրենց հետ մի թղթի կամ փայտի կտոր էին բերում և նետում բակը: Չալոն անցնում էր աշխատանքի: Նրա հետ չարչարվում էր նաև Կարապետ աղան: Երեխաներից թե մեկն ու մեկը սխալվեր, գետնին դներ պայուսակը, Չալոն այն անմիջապես կհասցըներ աղբարկղ:

Կարապետ աղան շատ անգամ էր դիմել երեխաներին, որ վերջ տան այդ անիմաստ խաղին: Բայց բավական էր դռնապանը շրջվեր, բակը լցվում էր թղթի ու փայտի կտորներով:

Մի անգամ Կարապետ աղան հիվանդացավ: Չալոն առավոտից երեկո վազվզում էր: Թղթի կամ փայտի կտորը բերանին՝ փռվում էր ասֆալտին, հևում: Քիչ հանգստանալուց հետո, նորից էր սկըսում իր աշխատանքը: Չնայած դրան, դպրոցի բակը էլ նույն մաքրությունը չուներ: Չալոն հո չէ՞ր կարող Կարապետ աղայի փոխարեն գետինն ավլել: Տեսնելով այդ բոլորը, Չալոն տագնապալի վնգստում էր, մերթ ընդ մերթ հայացքն ուղղելով կենտրոնական մուտքի դռանը, բարկացած սկսում էր հաչել: Բայց Կարապետ աղան չէր երևում:

Սկզբում տեսնելով Չալոյի պրարքը, ես ուղղակի

հրճվում էի: Բայց հետո այն փոխվեց կարեկցանքի: Մոտեցա Կարապետ աղայի ավելին, շոշափեցի այն, նույնիսկ ձեռքս վերցրի: Որոշել էի օգնել այդ խեղճ շանը: Բայց մի տեսակ անպատվաբեր համարելով, ետ քաշվեցի: Չէ՞ որ ես տղամարդ եմ... Իսկ ավելը աղջկա բան է: Եվ ձեռքերս գրպանս դրած, սկսեցի ոտքերով հավաքել աղբը: Բայց ոչինչ չստացվեց: Հանկարծ իմ գլխում մի միտք ծագեց. ես որոշեցի շանը մեր տուն տանել, մինչև Կարապետ աղան ապաքինվի:

Բայց ինչպե՞ս բռնեի: Չնայած նա սիրում էր վազվզել, սրա-նրա վերարկուից կամ պայուսակից քաշել, բայց իրեն ձեռք տալ, օ՜հ, երբեք թույլ չէր տա: Թե մեկը համարձակվեր շոյելու նպատակով ձեռքը թեթևակի կպցնել իրեն, նա կսպառնար ցույց տալով սուր ժանիքները:

Դասամիջոցին ես նորից վազեցի բակ: Որոշել էի՝ անպայման օգնել Ջալոյին, բայց կարմրեցի. փոքրիկ Մելանիկը ինձնից խելոք ու համարձակ էր գտնվել: Վերցրել էր Կարապետ աղայի հսկա ավելը և ավլում էր բակը: Նրան օգնում էին իր հասակակիցները: Ջալոն ուրախ վազվզում էր նրանց շուրջը: Անտարբեր կանգնել անկարելի էր, ես և իմ ընկերներն էլ խառնվեցինք այդ գործին: Շատ չանցած՝ բակը հաճելի տեսք ընդունեց: Մի քանի օր անց լրագրում երևաց մի լուսանկար. փոքրիկ Մելանիկը Կարապետ աղայի հսկա ավելով: Նկարել էին նաև Ջալոյին:

# Նալխռան Մանուկը

*(Իրողություն)*

Պոլսում տեղի էր ունենում ըմբիշների համաշխարհային մրցություն: Թուրքիայի ամենածանր քաշի ըմբիշը հրաժարվել էր աշխարհի չեմպիոնի հետ գոտեմարտելուց: Նույնիսկ սուլթան Համիդն անհանգստացած էր: Պատվի հարց էր:

— Մշեցի մի հայ մշակ մեծ համբավ ունի քո աստվածանիստ քաղաքում,— սուլթանին դիմեց մեծ վեզիրը:

— Վեզիրս ուշիմ է: Կարծես թե մի լավ խաղ է մտածել:

— Մեծ ուժի տեր է այդ հայ բեռնակիրը՝ Նալխռան Մանուկ անունով: Ձիու պայտը մի ձեռքով կարող է ջարդել:

— Բայց չեմպիոնը մարզված է, վեզիր:

— Ձեզ համար բավականությունն է պետք և հաճելի զավեշտը, երկնքի տիրակալ: Հայ մշակն է պարտվելու, ես էլ դա գիտեմ, բայց դրանից ի՞նչ վնաս, պարտվողը մեր ազգից հո չէ՞:

Սուլթան Համիդի գորշագույն, ժանտ դեմքին երևաց խորը բավականության ժպիտ: Համաձայն էր:

Եվ մյուս օրը Նալխռան Մանուկն իրավունք է ստանում ներս մտնելու թագավորական պալատ: Մեծ վեզիրը մտերիմ ժպտում է նրան:

— Քո մեծ հայրենիքի պատվի համար,— ասում է նա:

Մանուկը քթի տակ դառը ժըպտում է և հնազանդ կատարում տիրոջ ցանկությունը: Արևխանձ, նիհար ու ջղուտ մշեցին իսկույն հանում է փալանն ու կեղտոտ շորերը: Բայց նա չի կարողանում հագնել ըմբիշի թեթև, նուրբ զգեստը: Մանուկն ամաչում է, մոլորվել է, սակայն մեծ վեզիրին ո՞վ կարող է չլսել:

Եվ լայն դահլիճում նստած է արքայական վերնախավը: Բոլորն էլ սպասում են, որպեսզի կուշտ ծիծաղեն: Լուսավոր դահլիճի խավարամած մի օթյակում տեղ է գտել նենգ Համիդը:

Նալխռան Մանուկը կանգնած է բեմի մեջտեղում՝ կիսամերկ: Փաշաներն ու մեծամեծները ծիծաղում են զսպված և իրար մեջ փառաբանում վեզիրի հնարամտությունը: Կանգնած է ծաղրի նահատակը: Միտումով ուշացվում է արարողությունը, և ամոթը վառում է հսկայի դեմքը: Նա մի պահ մտքով տեղափոխվում է իր ծննդավայրը՝ հարազատների մոտ: Նա Մշո դաշտից Պոլիս էր հասել, որ բեռնակրություն անելով մի գոմեշի գին վաստակեր ու տուն վերադառնար: Չէ՞ որ նրա զույգ գոմեշներից մեկը տարել էր բեգը: Իսկ ինքը եկել էր այստեղ, որ գվարճացներ Համիդին:

— Հանուն ամենակարող սուլթան Համիդի,— վերջապես ասում է մեծ վեզիրը: Մանուկն ստիպված գլխով խոնարհության շարժում է անում:— Նալխռան Մանուկ,— շարունակում է նա,— ես կնստեմ շատ մոտիկ և մինչև աչքով չանեմ, գետին չգցես նրան:

Հպարտ. սնապարծ ներս է մտնում փառաբանված ըմբիշը: Տեսնելով միջահասակ, ամքած գյուղաց..ն, աշխարհի չեմպիոնը ժպտում է ինքնաբավական: Գալիս է նաև մրցության դատավորը: Երիտասարդ ըմբիշը քմահաճույքով ու արհամարհանքն աչքերում, տիրական մոտենում է քառասունն անց իր մրցակցին, որը կանգնել էր շփոթված ու գլխիկոր: Ըստ խաղի կանոնների, չեմպիոնը պարտավոր է ձեռք տալ մրցակցին, որը չարեց:

Այդ սնապարծությունը դուր չի գալիս Համիդին, չէ՞ որ ինքն էր միակ տիրակալը, միակ ուժն ու խելքը: Ո՞վ իրավունք ուներ նրա ներկայությամբ իրեն մարդ համարել: Եվ նա մեծ վեզիրին ինչ-որ բան ասաց:

Աշխարհի չեմպիոնը նախ ամուր սեղմեց Մանուկի կոշտ ու կոպիտ ձեռքը: Ոչ մի հետևանք: Առաջին դողն արդեն թույլ կերպով զգացվեց հազարավոր բեմերում հաղթանակած այդ ծանր ատլետի ծնկներում: Դահլիճը նույնպես նկատեց այդ երևույթը, թեև պարզորոշ նկատելի էր աչք ծակող հսկայական մի տարբերություն: Չեմպիոնը բավական բարձրահասակ էր և երկու անգամ ծանր կլիներ Մանուկից: Ոչ ոքի աչքից չվրիպեց նաև Մանուկի առավելությունը: Դա նրա տղամարդու զորեղ ու առնական կուրծքն էր, որ երկու անգամ լայն էր ըմբիշի կրծքից:

Զգալով, որ ատլետը սեղմեց իր ձեռքը, Մանուկը նույնպես համարձակվեց սեղմել հակառակորդի ձեռքը և ըմբիշն սկսեց իրեն կորցնել:

Տրվեց մրցության ազդանշանը:

Փառաբանված ըմբիշը ոստնեց հանկարծակի, գրկեց Մանուկին, որ դեռ ուշքի չէր եկել և դեռ մտածում էր արտակարգ, անսովոր իր վիճակի մասին:



Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Մյուս կողմից Մանուկն իր աչքը չէր կարողանում հեռացնել վեզիրի դեմքից: Ճարպիկ էր ատլետը: Հմտացած իր արվեստի մեջ, նա գործի էր դնում ամեն ձև ու հնարք: Բայց Մանուկն ասես թե մեխված էր տեղում և պաշտպանվում էր միայն: Ատլետը նույնիսկ խանգարում էր խաղի կանոնները, և անխիղճ դատավորը չէր զգուշացնում:

Ուղղակի մի երկարատև քաշքշուկ էր դա: Մեծ վեզիրն էլ ուշացնում էր ազդանշանը: Մանուկն արճճի ծանրությամբ կանգնած տեղում հազիվ-հազ կարողանում էր ետ մղել հակառակորդի անընդմեջ գրոհները՝ ծիծաղելի, բայց համարձակ և հատու ձևերով: Այդպես բավական ժամանակ անցավ:

Վերջապես վեզիրն աչքի պոչով ինչ-որ նշան արեց:

Մանուկն իսկույն հարձակման անցավ: Նրա յուրաքանչյուր շարժումը վայրկենական էր և հատու: Մի քանի րոպե շնչահեղձ ըմբիշը դեռ ցուցաբերում էր գերազանց ճարպկություն: Չկան պես նա կարողանում էր Մանուկի ձեռքերի միջից ազատվել: Սակայն գոտեմարտն արդեն մոտենում էր իր անսպասելի վախճանին: Նալխանի ձեռքերը երկաթե աքցան էին: Բավական էր, որ ատլետի մարմինն ընկներ այդ ահեղ աքցանի մեջ: Եվ ընկավ: Ընկավ, և այն էլ՝ մեջքը:

Մշեցի հսկան հաղթամարմին այդ ըմբիշին ճմլելով բարձրացրեց իր գլխից վեր և այդպես, ցդում պահած, սպասում էր գետնելու ազդանշանին, որ շուտով տվեց վեզիրը: Եվ՝ փոթորկալի ծափերի ուղեկցությամբ Մանուկն այդ ահագին մարմինը իջեցրեց ներքև ու պառկեցրեց մեջքի վրա:

Սուլթան Համիդը հիացմունքի գագաթնակետին էր հասել: Նրա աչքին Մանուկն այդ պահին թվում էր հսկա մի փիղ, ոչ միայն իր գերբնական ուժով, այլ նաև իր բարությամբ ու հեզությամբ: Եվ Համիդի այն հարցին, թե ինչ է ցանկանում, որ նրան տա սուլթանը, Նալխան Մանուկը պատասխանեց հաստատակամ.

— Մե հատ գոմեշ...

*ՎԱՀԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ*

# ԻՆԿԵՐԻ ՈՍԿԻՆ

Հնագույն ժամանակներում Հարավային Ամերիկայի անսահման լայնություններում ինկերի կայսրությունն էր ընկած։ Նրա մայրաքաղաքը Կուսկոն էր, որը «Աշխարհի պորտ» է նշանակում։ Կայսրին, այսինքն «Մեծ Ինկին» արևի որդի էին համարում և պաշտում էին որպես կենդանի աստծու։ Նա իր հպատակների կյանքի տերն ու տիրականն էր։ Այդ կայսրության մեջ բնակվող մարդիկ ո՛չ առևտուր էին ճանաչում, ո՛չ փող։ Ոսկին նրանց համար արժեք չուներ և սրբազան մետաղ էր համարվում, որը պատկանում էր արևի աստծուն։ Ինկերի տաճարներում հսկայական քանակությամբ ոսկի էր կուտակվել։

Մեծ Ինկ Խուայնա-Կապակը մեռնելուց առաջ իր կայսրությունը բաժանեց երկու մասի։ Հարավային մասը Կուսկո մայրաքաղաքով տվեց Խուասկար որդուն, Հյուսիսայինը՝ Կիտո քաղաքով տվեց մյուս որդուն՝ Աթավալպին։ Անմիջապես եղբայրների մեջ կատաղի թշնամություն բռնկվեց։ Աթավալպը դավաճանորեն հարձակվեց Խուասկարի վրա, գերի վերցրեց նրան և շղթայեց։ Նա սպասում էր իր զորավար Ռումինյավին, որպեսզի իր միավորված զորքի գլուխն անցած՝ մտնի Մեծ Ինկերի մայրաքաղաքը։

Հենց այդ ժամանակ էլ իր զորքերով ափ դուրս եկավ իսպանացի նվաճող Պիսարոն, որը Պերուի նահանգապետ էր նշանակված։

Պիսարոն Մեծ Ինկ Աթավալպին խնջույքի հրավիրեց։ Աթավալպը ընդգծելով իր խաղաղասիրությունը, ներկայացավ խրնջույքի։ Նրան բերում էին պատգարակով, նա կրում էր առաջնորդի իր ոսկեղեն ու փետրավոր զարդարանքները։ Ե՛վ Մեծ Ինկը, և՛ նրան ուղեկցող մեծապատիվ անձինք ներկայացան առանց զենքի։ Իսպանացիներն իսկույն հարձակվեցին հյուրերի վրա, կոտորեցին Աթավալպի շքախումբը, իսկ իրեն շղթայակապ նետեցին կախամարկայի իր սեփական պալատը։



— Դու առո՞ղջ ես, Մեծ Ինկ —Աթավալպի սենյակը մտնելով երեսպաշտորեն հարցնում էր Պիսարոն։ —Դու ազատությո՞ւն ես ուզում։

— Ազատություն տուր ինձ, օտարակա՛ն,—խնդրում էր Ինկը։—Ես քեզ ո՛չ մի վատ բան չեմ արել... Ազատություն տուր ինձ։

— Ազատությունը գնում են, Ի՛նկ, — մի օր պատասխանեց Պիսարոն։—Ես կայսր Աթավալպին կազատեմ, եթե նա այս սենյակը լցնի ոսկով։

— Այս բարձրությա՞մբ.—Ինկը ձեռքը բարձրացրեց։ Նրա ձեռքի բարձրությամբ գծելով սենյակի պատերը՝ հաշվեցին տեսան, որ 30 խորանարդ մետր է անում։ Երեսուն խորանարդ մետր ոսկի՜...

Մեծ Ինկի սուրհանդակները ամբողջ կայսրությունը շրջեցին Աթավալպի հրամանով։ Ոչ ոք չէր վիճարկում կայսեր հրամանը։ Թանկագին ոսկու կույտը գնալով աճում էր, բայց արդեն երկու ամիս էր անցել, իսկ սենյակը դեռ լցված չէր։

— Սպասիր էլի,—աղաչում էր Ինկը.—շուտով քո ցանկացած ոսկին կհավաքվի։

— Իսկ դու գիտե՞ս, Ի՛նկ, որ քո եղբայր Խուասկարը նույնպես չի հրաժարվել Պերուի գահի իր իրավունքներից։ Նրա դեսպանները խոստացան գահը գնել ավելի թանկ գնով։ Նրանք խոստանում են այս սենյակը ոսկով լցնել մինչև առաստաղ, եթե մենք Խուասկարին բաց թողնենք։

Մի քանի օր հետո Աթավալպի հրամանով Խուասկարը ըսպանվեց Կուսկոյի բանտում։ Իսկ Ինկի սենյակը, ինչպես որ խոստացել էին, լցրեցին ոսկով։ Պիսարոն դարձավ մի այնպիսի հարստության տեր, ինչպիսին այն ժամանակ չուներ ոչ մի եվրոպացի միապետ։

Իսկ մի քանի օր հետո Կախամարկայի այն հրապարակում, ուր ինն ամիս առաջ շքեղ զարդարանքներով խնջույքի եկավ Աթավալպը, նա կախաղան բարձրացվեց:

Այդ օրվանից իսպանացիները սկսեցին թալանել ինկերի ոսկին: Բայց Կուսկոյի և Կիտոյի տաճարներում կուտակված մետաղն անհայտացավ: Անհայտացավ նաև այն յոթանասուն հազար շալակ ոսկին, որով լցրել էին Մեծ Ինկի սենյակը՝ նրան ազատելու համար:

Իսպանացիներն սկսեցին դաժանորեն տանջել հնդկացիներին, սակայն նրանք ոչինչ չէին ասում: Մեռնելով նրանք ասում էին միայն. «Մնացածները գիտեն»: Իսկ երբ հարցաքննում էին մնացածներին, սրանք ասում էին նույնը և մեռնում էին դանդաղ ու տանջահար մահով:

* * *

Հարյուրավոր տարիներ են անցել, բայց մինչև այսօր էլ արկածախնդիր մարդիկ շարունակում են որոնել ինկերի ոսկին: Ոչ միայն արկածախնդիր մարդիկ, այլև լուրջ գիտնականներ ու հետախույզներ են զբաղվել ավանդական որոնումներով, բայց ինկերի սրբազան ոսկին չկա ու չկա:



# ԱՌԵՂԾՎԱԾԱՅԻՆ ՍԱՐԱՀԱՐԹԸ

Պերուական Նասկա քաղաքի շրջակայքում հողերը խստաշունչ են ու ժանձրալի, բայց սև քարետախտակի նման ծածկված են գծերով, երկրաչափական պատկերներով ու նկարներով: Բարակ ու սպիտակավուն գծերը հատելով հսկա սարահարթը՝ ձգվում են կիլոմետրերով: Հողի ծածկույթն այստեղ հարուստ է երկաթի օքսիդով, և եթե հեռացնես օքսիդի բարակ շերտը, սպիտակ ակոսներ կբացվեն:

Գծերը տարբեր ուղղություններով են ձգվում: Նրանցից մի քանիսը իրար զուգահեռ են, մյուսները՝ փոխադարձաբար ուղղահայաց և տեղ-տեղ առաջացնում են եռանկյուններ կամ քառանկյուններ, որոնցից ամենամեծը 1700 մետր երկարություն և 50 մետր լայնություն ունի: Այդ անհասկանալի գծագրերով ծածկված հարթությունը 250 քառակուսի կիլոմետր է բռնում:

Հավանական է, որ ոչ թե մի, այլ անհայտ նկարիչների մի քանի սերունդներ են աշխատել այդ գծագրերի վրա:

Բայց ամենազարմանալին այն է, որ տեղ-տեղ այդ գծերը միանում են և նկարներ կազմում: Ահա ալիքաձև շոշափուկները չռած մի կենդանի, ահա մարդկային ձեռքերը վեր բարձրացրած մողես, թևերը տարածած թռչուն, գետնին կպած սարդ:

Ահա բարձր եռատամ թագերով երեք ֆիգուր: Ովքե՞ր են նրանք: Անհետացած ժողովրդի թագավորնե՞ր են, որոնց հրամանով էլ հարթությունը ծածկել են գծանկարներով: Սակայն այդ վայրերում պեղումների ժամանակ բացված դամբարանները սոցիալական շերտավորում ցույց չեն տալիս: Այդ դամբարաններում թագավորին ու նկարչին իրարից չի կարելի տարբերել:

Ահա կապիկի մի պատկեր: Բայց ինչպե՞ս կարող էին կապիկ տեսնել այստեղ ապրած մարդիկ, երբ կապիկները բնակվում են միայն բարձրագագաթ Անդերի մյուս կողմում:

Եվ այդ ի՞նչ կորագծեր են, որ այդքան մաթեմատիկական ճշտությամբ պատկերված են գետնի վրա: Դրանց հաճախ «ինկերի ճանապարհ» են անվանում, սակայն ինկերը իրենց ճանապարհներն ավելի ուշ ժամանակներում են կառուցել և ամենևին էլ ուշադրություն չեն դարձրել իրենցից առաջ գետնի վրա գծած անհասկանալի նշանների վրա:

Ի՞նչ գիտե մարդկությունը այդ տարօրինակ նկարիչ-ժողովրդի մասին: Բայց մի՞թե միայն նկարիչ կարելի է ասել նրանց, երբ այդ գծանկարների տակ ակնհայտորեն մեզ անհայտ գիտական միտք կա թաքցրած:

Մեր օրերում Նասկա քաղաքի շրջակայքում ապրած ժողովրդից ոչինչ չի մնացել, եթե չհաշվենք գործվածքների, կավե իրերի և շինությունների այն մնացորդները, որոնք հայտնաբերվել են Նասկա, Պիսկո և Իկա հովիտների ավազանում: Դրանք մեծ մասամբ հյուսած և ծեփած շինություններ են: Նասկերը ռազմամոլներ չէին: Ինչպես երևում է, Նասկերը միակ ժողովուրդն



են եղել, որոնք ռազմական ամբություններ չեն կառուցել, այն ժամանակ, երբ հարևան ցեղերը շրջապատված էին նման ամբություններով:

Ընդհակառակը, Նասկերը մեծ հաճույքով զբաղվում էին երկրագործությամբ: Նրանց կրոնա-



կան սովորությունները գյուղատնտեսության վերաբերող՝ նույնիսկ գիտական հիմք ունեին: Պաշտամունքի սովորության համաձայն, ցանքի ժամանակ նրանք երկու ձկան գլուխ էին գցում ցորենի հետ, որից ցորենը հարստանում էր ֆոսֆորական պարարտանյութերով և առատ ծիլեր էր տալիս:

Նասկերը համեստ են եղել և իրենց մասին ոչինչ չեն պատմել՝ կավե իրերի վրա ոչ մի ժանրային նկար չթողնելով:

Բայց դրա փոխարեն, Նրանց կավե առարկաները պատած են հրեշների, կատվի գլուխ ունեցող հազարոտնուկների, հսկայական տխուր աչքերով կատվի աստծու, գազանների ու թռչունների նկարներով:

Աղքատ հողից անջատելով զանազան հանքային ներկանյութեր, Նրանք ստանում էին մոտ քսան երանգ իրենց ստեղծագործություններին գույն տալու համար:

Սակայն ամենահետաքրքիրը սարահարթի հսկայական գծանկարներն են: Ինչպե՞ս գտնել դրանց գաղտնիքը:

Դոկտոր Պաուլ Կոզակը մի համարձակ ենթադրություն է անում: Արդյո՞ք մենք գործ չունենք մի հսկայական աստղաբաշխական ատլասի հետ: Գիտնականին հաջողվեց փոխադարձ կապ գտնել գծերի ու աստղագիտական տարեթվերի միջև: Պարզվեց, որ Նրանցից մի քանիսը ճշտորեն պատկերում են զանազան աստղերի շարժումները: Նասկերը ճշտությամբ ցույց էին տալիս հյուսիսը, չնայած որ բևեռային աստղը նրանց մոտից չէր երևում: Էլ ինչու՞ չենթադրել, որ հարթության վրայինը աստղաբաշխական մի օրացույց է, որտեղ նշված է երկնային մարմինների շարժման ժամանակը: Կոզակը մաթեմատիկոս Մարիա Ռեյխեին առաջարկեց զբաղվել «Մեծ օրացույցի» ուսումնասիրությամբ: Այդ համարձակ կինը 30 տարի մեն-մենակ անմարդաբնակ սարահարթում դժվարին աշխա-




տանք տարավ: Նրան հաջողվեց մեկնաբանել մի քանի գծանկարներ, որոնք երևում են առավոտյան որոշակի ժամերի, երբ արևի ճառագայթներից թեք ստվերներ են առաջանում:

Որոշ գիտնականներ կարծում են, թե այդ նկարներն ու գծերը իրենցից ոռոգող ջրանցքների ցանց են ներկայացնում: Գուցե իսկապես նրանց միջով իրոք հոսել է այդ վայրերի աղքատ հողերը ոռոգող ջուրը: Զանազան այլ ենթադրություններ են անում գիտնականները, բայց ինչպիսի ենթադրություններ էլ որ արվեն, մի բան պարզ է և կարելի է ասել որոշակիորեն՝ այդ զարմանալիորեն ուղիղ գծերի ու նկարների և՛ հղացումը, և՛ կատարումը պահանջել են բարձր վարպետություն, մեծ ու կազմակերպված աշխատանք: Գիտնականները կարծում են, թե տարօրինակ գծագրերի հեղինակ ժողովուրդը գրականություն չի ունեցել: Բայց դժվար է ասել, թե ի՛նչ է ունեցել և ինչ չի ունեցել այդ հին ժողովուրդը, երբ բոլոր հետագա ցեղերն ամեն ինչ արել են, որպեսզի նրանցից հետք չմնա:

Նույնիսկ ինկերի հզոր կայսրությունը, որը նույնպես գրավել էր Նասկերի երկիրը, դաժանորեն ոչնչացնում էր նրա կուլտուրան:

Երբ իսպանացիները ոտք դրին ամերիկյան մայր ցամաքի վրա, նրանք ևս վայրագորեն սկսեցին ոչնչացնել ինկերի կուլտուրան: Բարեբախտաբար Նասկայի սարահարթը հեռու էր ընկած մեծ-մեծ ճանապարհներից և Պերու ներխուժողների տեսադաշտի մեջ չէր ընկնում:

Եվ այժմ Նասկայի սարահարթը առաջվա պես մնում է առեղծվածային: Չէ՞ որ Նասկերի գծերի, նկարների և կորագծերի տակ թաքնված է մեզ անծանոթ այնպիսի կերպարների, գա-



ղափարների և հասկացողությունների աշխարհ, ինչպես եթե խոսքը գնար Մարսի անապատների վրայի նկարների մասին:



# ՈՎՔԵՐ Ե՞Ն ՄԵՐ ԱՄՍԱԳՐԻ ԼԱՎԱԳՈՒՅՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ

## ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅՈՒՆ

Բոլոր հարցերին ճիշտ պատասխանողները կպարգևատրվեն առաջին կարգի հուշաթերթով: Երկրորդ կարգի հուշաթերթի կարժանանան նրանք, ովքեր կպատասխանեն ոչ պակաս, քան 18 հարցի: Իրենց սպառիչ պատասխաններով ու գրագետ շարադրանքով առավել աչքի ընկած ընթերցողները խմբագրության կողմից կխրախուսվեն նաև նվերներով:

Յուրաքանչյուր հարցի պատասխանը գրելուց հետո, պետք է նշել, թե «Պիոներիս» որ համարում է այդ մասին տպագրված, ինչպես նաև՝ նյութի վերնագիրը:

Խմբագրությունը պատասխանները պետք է ստանա ոչ ուշ, քան հոկտեմբերի 10-ը (Հայաստանում ապրողների համար), հոկտեմբերի 15-ը (Սովետական Միության այլ հանրապետություններում ապրողների համար) և հոկտեմբերի 30-ը (արտասահմանում ապրողների համար):

Մրցանակաբաշխությանը կարող են մասնակցել մինչև 15 տարեկան հասակի երեխաները:

Պատասխաններն ուղարկելիս չմոռանաք գրել ձեր ազգանունը, անունը, հայրանունը, տարիքը և հասցեն:

1. Ի՞նչ էր այն պատանու անունը, որը 1945 թ. գարնանը ոչնչացրեց ֆաշիստական 80 սպա:

2. Ո՞ր դպրոցում է սովորում այն դպրոցականը, որը 1964 թ. ամռանը թեթև ատլետիկայի քառամարտում նվաճեց հանրապետության բացարձակ չեմպիոնի կոչումը: Ինչպե՞ս է նրա անունը և ազգանունը:

3. Ինչո՞ւ Կարոլինկան վճռեց, որ, ինչ էլ լինի, կենդանաբանական այգի չի գնա:

4. Որտեղի՞ց են վերցված այս տողերը. «Զանցած մի քանի րոպե, լսվեց այնպիսի մի ուժեղ պայթյուն, որ արհեստանոցի պատուհանների ապակիները դուրս թռան շրջանակներից: Աշոտն ու Վարդանը վախեցած նայեցին միմյանց»: Հետո ի՞նչ տեղի ունեցավ:

5. Ինչո՞ւ Հայկը Տիգրանին անվանեց «Տիգրանուհի»: Ո՞վ է այդ պատմվածքի հեղինակը:

6. Ո՞ր դպրոցում էին ուսուցչություն անում Կոմիտասը, Դանիել Վարուժանը, Սիամանթոն, Ռուբեն Սևակը, Ռուբեն Զարդարյանը:

7. Ի՞նչ էր գրված Վիկտորակիի բա՛ճկոնի կապույտ ժապավենի վրա և ի՞նչ է դա նշանակում:

8. Լեռներում մոլորված Ալյոշան ի՞նչ տեսավ տասնյոթերորդ օրվա լուսադեմին:

9. Արխանգելսկի նահանգում առաջինը ո՞վ էր պատրաստել հոլանդական տիպի արագասահ մի նավակ, որը կոչել էր «Ջալկա»:

10. Վազգյուկ պապը, երբ փոքր ժամանակ հիվանդացել էր, ո՞վ էր նրա համար բժիշկ կանչել:

11. Ո՞վ է այս տողերի հեղինակը.

«Փոքրիկ եմ ես բոլորովին,
Բայց հարուստ եմ իմ տվածով...
Թե չլինեն գետերն ինձ պես,
Ոչ մեծ գետը գետ կլինի,
Ոչ էլ ծովը կլինի ծով...»

12. Ո՞ր գետն է հոսում ութ երկրների տերիտորիայով:

13. Ինչո՞ւ Նյուկասլ քաղաքում մանուշակները սպիտակ էին:

14. Ինչո՞ւ վիետնամցի ծեր կինը օտարազգի զինվորին չէր թողնում ջուր խմել:

15. Ի՞նչ տեսավ այն շինականը, որը մի օր կոտրած մանգաղը նորոգելու համար մտավ դարբնոց: Հետո ի՞նչ արեցին վանականները:

16. Հայրենական պատերազմում զոհված այն ո՞ր հայ մարտիկի դիմանկարն է կախված Իվանովո-Ֆրանկովսկ քաղաքի մարտական փառքի թանգարանում:

17. Ովքե՞ր են Երևանում կառուցվող «Անի» հյուրանոցի նախագծի հեղինակները:

18. Ինչո՞ւ Ստեփան Շահումյանը առանց թեյելու դուրս եկավ տնից:

19. Ի՞նչ էր այն պատանու անունը, որի նկար-հանելուկն ունի 560 տարվա պատմություն:

20. Որտեղի՞ց էր տղաների ձեռքն ընկել այն հին լրագիրը, որը Կարոն կարդում էր եկեղեցու բակում:

21. «Մինչ պառավ որբևայրին որդու հետ կհասցներ ոսկիները հաշվել, բուխարու միջից մի զարհուրելի ձայն լսվեց»... Դա ո՞ւմ ձայնն էր:

22. Հանգստից հետո դաշտամկան բնի անցքում ի՞նչ տեսան տղաները:

23. Ե՞րբ է արյունը լինում կապույտ:

24. Ո՞ր թվականին է հաստատվել Լա-Մանշի անգլիական ափին հսկող պահակի պաշտոնը:

Պատանի ընթերցող, դու արդեն վարժվել ես այն բանին, որ ամսվա վերջերին փոստատարը «Պիոներ» ամսագրի թարմ համար է բերում: Դու, նույնիսկ, ամսվա վերջերին անհամբեր ես դառնում և, երբ ստացվում է «Պիոների» հերթական համարը, դու քաշվում ես քո անկյունը և կլանվում ընթերցանությամբ:

Բայց դու, պատանի ընթերցող, երևի, մոռացել ես, որ ընդամենը մեկ տարով ես բաժանորդագրվել քո սիրելի ամսագրին: 1966 թվականի համար դու նորից պետք է բաժանորդագրվես «Պիոներին»: Դրա համար պետք է ունենաս 2 ռուբլի 40 կոպեկ և դիմես ծեր դպրոցի ավագ ջոկատավարին:

Ամսագրին կարող ես բաժանորդագրվել նաև 6 ամսով, իսկ հետագայում կբաժանորդագրվես երկրորդ կիսամյակի համար: Վեց ամսվա բաժանորդագրության արժեքն է 1 ռ. 20 կ.:

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵՔ «ՊԻՈՆԵՐ» ԱՄՍԱԳՐԻՆ

«Պիոները» մեր հանրապետության միակ մանկական պատկերազարդ ամսագիրն է: 1966 թվականին դուք շատ հետաքրքրական նյութեր կկարդաք ամսագրում: Կշարունակվի տպագրվել Խ. Գյուլնազարյանի վիպակը, որի տպագրությունը կավարտվի 1966 թվականի կեսերին միայն: Անմիջապես հետո կտպագրվի մի նոր արկածային վիպակ, որի մասին կհայտնենք առանձին:

«Պիոների» էջերում դու կկարդաս նաև հետաքրքրաշարժ տեղեկություններ գիտության ու տեխնիկայի, արվեստի և գրականության մասին:

1966 թվականին ավելի հաճախ կտպագրվի ամսագրի «Ծիծեռնակ» հավելվածը, որտեղ նյութեր կլինեն ամենափոքրիկների համար:

«Պիոներ-դպրոցական» բաժնում ակնարկներ կլինեն դպրոցական առօրյայից, իսկ «Պիասեբը» կշարունակի տեղեկություններ հաղորդել դրուժինաներից ու ջոկատներից:

Ուրիշ շատ հետաքրքիր նյութեր կկարդաս դու, պատանի ընթերցող, քո ամսագրի էջերում, միայն թե չմոռանաս բաժանորդագրվել:

Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Ա. (գեղարվեստական խմբագիր), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2-11-83, 2-59-06:

ՎՖ 07859, Պատվեր՝ 1880, Տպաքանակ՝ 13 300, Տպագրական 5 մամուլ, Ստորագրված է տպագրության 3/IX 1965 թ.: ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91: Գինը՝ 20 կ.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ ժող. նկարիչ ԷԴՎԱՐԴ ԻՍԱԲԵԿՅԱՆԻ «Գանգրահեր տղան»

# ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԵՐԳԻՉԸ



1900 թվականին, ցարական Ռուսաստանի հեռավոր Վյատկայի շրջանում իրար հետ ծանոթացան երկու հեղափոխական աքսորյալներ՝ հայ ականավոր սոցիալ-դեմոկրատ Աշոտ Խումարյանը և լատիշ բանաստեղծ Յան Ռայնիսը։ Նրանք գնալով ավելի ու ավելի մտերմացան. հաճախ զբոսանքի էին գնում միասին և երկար զրուցում իրար հետ։ Նրանց զրույցներին միշտ մասնակից էր լինում նաև Ռայնիսի կինը՝ Ասպազիան։

Մի անգամ, երբ Աշոտը ոգևորված պատմում էր նրանց հայ ժողովրդի պատմական մեծ սխրագործությունների, գրական ու ճարտարապետական բազմադարյան հուշարձանների և ապա Արևմտյան Հայաստանում տեղի ունեցած կոտորածների մասին, թե՛ Ռայնիսը, և՛ թե նրա կինը խորապես զգացվեցին, որովհետև իրենք էլ փոքր ու ճնշված ժողովրդի զավակներ էին։ Զրույցի խոր տպավորության տակ Ռայնիսը դիմեց Աշոտին.

— Սիրելի Խումարյան, իմ մեջ միտք ծագեց անպայման գրել մի լուրջ ուսումնասիրություն ձեր հերոսական ժողովրդի մասին. ես կխնդրեի, որ դու քո պատմածը ավելի ընդարձակ գրի առնես և ինձ տաս։

— Ես պատրաստ եմ,— ասաց Խումարյանը, և նրանք բաժանվեցին։

Մի քանի օրից հետո Աշոտը ներկայացրեց ցանկացած շարադրանքը, որից օգտվելով Ռայնիսը գրեց մի ծավալուն հոդված։ Այդ հոդվածը իր ժամանակին չի տպագրվում, քսանվեց տարի մնում է բանաստեղծի արխիվում, որից հետո հեղինակը իր ուսումնասիրությունը լրացնելով նորահայտ նյութերով, հանձնում է հրատարակության։ Թե՛ այդ հոդվածով և թե՛ իր կատարած թարգմանություններով Ռայնիսը առաջինն էր, որ ծանոթացրեց լատիշ ժողովրդին հայոց բազմադարյան պատմության և հոգևոր հարուստ գանձերի հետ։

Ազատաշունչ բանաստեղծը մեծ հետաքրքրություն էր ցուցաբերում ո՛չ միայն հայերի, այլև բոլոր փոքր, հալածված ազգերի նկատմամբ։ Դեռևս Պետերբուրգի համալսարանում ուսանելիս՝ նա գրեց մի ընդարձակ շարադրություն. «Ազգային փոքրամասնությունների գրականության մասին», որը հետագայում համարում էր իր հրապարակախոսական առաջին ելույթը։ Իսկ ավելի վաղ, պատանեկան հասակում Ռայնիսը հավաքում ու գրի էր առնում լատիշական, լիտվական, բելոռուսական, էստոնական ժողովրդական երգեր և տանը ազատ խոսում էր ութ տարբեր լեզուներով ու բարբառներով։

Գաղափարական սկզբունքներով Ռայնիսը նման էր Միքայել Նալբանդյանին, նա նույնպես մեծ հումանիստ էր, բանաստեղծ-մարտիկ, անվեհեր հեղափոխական և ամբողջ կյանքը առանց մնացորդի նվիրեց ժողովուրդների ազատության, եղբայրության ու իրավահավասարության գործին։ Կյանքի մեծ մասը Ռայնիսն անցկացրեց բանտերում ու աքսորավայրերում, բայց երբեք չընկրկվեց։ Իր ոգեշունչ, մարտական բանաստեղծություններով նա մշտապես պայքարի կոչ էր անում բռնակալության դեմ և վերջնական հաղթանակի հավատ ներշնչում։ Հուսադրելով հեղափոխական մասսաներին, Ռայնիսը խոստանում էր բռնության շղթաները փշրելուց հետո «նոր օրերի գործվածք, արևային տաք հագուստ հագցնել բոլոր նրանց, ովքեր ծնված են թշվառության մեջ»։

Ահա՛ թե ինչու բոլոր երկրներում աշխատավոր ժողովուրդները խորը սիրով ու երախտագիտությամբ են նշում լատիշ մեծ բանաստեղծի ծննդյան հարյուրամյակը։

*Ս. ՄԿՐՏՉՅԱՆ*

